

Թո՛յլ տուք մանկտւոյդ գալ առ իս, և
մի՛ արգելուք զդոսա. զի այդպիսեա՛ցդ
է արքայութ̃ի Ա̃յ (Ղուկ. ժ̃ը. 16):

Mserzants, M.
Hrahang kristoneakan hawatots...

# ՀՐԱՀԱՆԳ

# ՔՐԻՍՏՈՆԷԱԿԱՆ

## ՀԱՒԱՏՈՑ

ԸՍՏ

ՈՒՂՂԱՓԱՌ ԴԱՒԱՆՈՒԹԵԱՆ

ԵԿԵՂԵՑԻՈՅ

ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ




ԱՇԽԱՏԱՍԻՐՈՒԹԵԱՄԲ

ՄՍԵՐԱՅ ՄԱԳԻՍՏՐՈՍ

ԿՐՕՆՈՒՍՈՅՑ ՎԱՐԺԱՊԵՏԻ ԼԱԶԱՐԵԱՆ ՃԵՄԱՐԱՆԻ


ԵՐԿՐՈՐԴ ՏԻՊ


Ի ՄՈՍԿՈՒԱ

Ի ՏՊԱՐԱՆԻ ԼԱԶԱՐԵԱՆ ՃԵՄԱՐԱՆԻ ԱՐԵՒԵԼԵԱՆ ԼԵԶՈՒԱՑ

1861

ՄԱՏԹԷՈՍ
ԵՊԻՍԿՈՊՈՍԱՊԵՏ
ԵՒ ԿԱԹՈՂԻԿՈՍ
ԱՄ․ ՀԱՅՈՑ
ՌՅԷ * 1858

Ընթերցեալ զմատենիկս զայս ընդ վերնագրով ՀՐԱՀԱՆԳ ՔՐԻՍՏՈՆԷԱԿԱՆ ՀԱՒԱՏՈՑ, և զբովանդակութիւն բանիցն որ 'ի սմա՝ գտեալ ամենայնիւ հարազատ, և համաձայն Առաքելական ուղղափառ վարդապետութեանց Ս. Եկեղեցւոյ Հայաստանեայց, հրամայեմք տպագրել 'ի պէտըս ազգային ուսումնարանաց: Յորոյ 'ի հաստատութիւն՝ դրոշմեալ զՊատրիարգական մեր զկնիք՝ ստորագրեմք, 'ի 27 Ապրիլի 1861 ամի Փրկչին, 'ի Ս. Էջմիածին:

ՄԱՏԹԷՈՍ

Կաթողիկոս ամենայն Հայոց:

# ԱԶԴ

Գիրքս այս՝ որ միանգամ տպուած էր 'ի 1850 թուականին, այժմ և երկրորդ անգամ 'ի լոյս ելանէ ահա 'ի տպագրական մամլոյ՝ վեհագոյն հրամանաւ Մեծ Խնամակալին Ս. եկեղեցւոյս Հայաստանեայց՝ Տ. Տ. ՄԱՏԹԷՈՍԻ Արքազնակատար Կաթողիկոսի, 'ի վայելս ուսումնակարօտ մանկանց Ազգիս:

Այս երկրորդ տպագրութիւնս՝ թէպէտ և ըստ նիւթոցն բովանդակութեան նոյն է առաջնոյն հետ, բայց չափաւորապէս ընդարձակուած է և այլևայլ՝ գիտելոյ արժանի՝ ծանօթութեամբք՝ առաջին մասին մէջ, և պատշաճաւոր վկայութեանց յաւելուածով՝ երկրորդ մասին մէջ, որպէս ունին տեսանել ընթերցողք:

Որովհետև այսպիսի ուսումնական գրեանք յօրինուում են յատկապէս 'ի պէտս չափահասակ աշակերտաց՝ որք դասատուութեամբ վարժուած են կամ վարժըւում են մեր կանոնաւոր Գրոց լեզուին մէջ, պարտ և պատշաճ էր և մեզ այժմ և նոյն լեզուով 'ի լոյս ընծայել զայս մեր գրական վաստակը, որպէս 'ի լոյս ընծայած եմք առաջին տպագրութեամբ. սակայն հայելով

ոմանց իրաւացի թախանձանացը, և կամելով միանգամայն՝ որչափ կարելի թուէր՝ հեշտընկալ և դիւրիմաց առնել գոնէ հմուտ վարժապետների ձեռաց տակ հրահանգըւող մանկանց՝ զՔրիստոնէական հաւատոյ կարևորագոյն գիտելիքները՝ ըստ ուղղափառ դաւանութեան Սուրբ Եկեղեցւոյ Հայաստանեայց, ջանք և աշխատութիւն յանձն առայ փոքր մի զԳրոց լեզուի ձևերը աշխարհիկ լեզուի ձևերին փոխել, բայց ոչ շատ խոտորելով և ոչ 'ի սպառ հեռանալով յայն ընդհանուր պայմաններից՝ զորս պահանջէ հարկաւ Հայկական ուղղախօսութիւնն։ Եւ այս այնու պատճառաւ՝ որ (որպէս յայտնի է գիտնոց) առանց 'ի գործ ածելոյ զԳրոց լեզուի բառերը, երբեմն և զձևերը, Սիոնական զգուշալի տարակոյից և Աստուածաբանական նուրբ խնդրոց վերայ՝ լոկ մասնական (այս կամ այն գաւառի կամ քաղաքի) անհարթ՝ անկանոն՝ և բազմօք պակասաւոր լեզուով բան գրելն, ոչ միայն անպատեհ է, այլ և վտանգաւոր, և ոչ միայն վտանգաւոր, այլ և անկարելի։

Մ. Մսերեանց։





«Պիտոյ է միշտ դաստիարակութիւն Աւետարանին, և հրահանգէ զմեզ 'ի լաւութեան կարգս. զի յանձնեալք 'ի շնորհաց Հոգւոյն սրբոյ՝ ճշմարտութեամբ անձկաւ ածցուք զվաստակս արդարութեան սուրբ սրտիւ և ուղղափառ հաւատով Աստուած»։

Գ. Լուս. 'ի Յաճախապ. ճառ Է։

«Ո՛չ զայս ճշմարիտ հաւատս ունիմք 'ի Սուրբ Գրոց և յՕրինաց եկեղեցւոյ՝ առաջնորդ կենաց ճանապարհի առ Աստուած»

Նոյն. յԱփ[illegible]։





# ՀՐԱՀԱՆԳ

## ՔՐԻՍՏՈՆԷԱԿԱՆ ՀԱՒԱՏՈՅ

## ԸՍՏ

## ՈՒՂՂԱՓԱՌ ԴԱՒԱՆՈՒԹԵԱՆ

## ԵԿԵՂԵՑՒՈՅ

## ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ

Հ. *Ո՞վ է Քրիստոնէական հաւատոյ առաջին հիմն և բուն հեղինակ։*

Պ. *Նոյն ինքն Տէրն մեր Յիսուս Քրիստոս։*

Հ. *Ի՞նչպէս աւանդեց նա զիւր վարդապետու-թիւնը։*

Պ. *Նախ՝ ինքնին իւր բերանովն՝ բացայայտ բանիւք ուսուցանելով՝ մինչդեռ երկրի վե-*



*«Պիտոյ է միշտ դաստիարակութիւն Աւետարանին, որ հրահանգէ զմեզ 'ի լաւութեան կարգս. զի յանձանձեալ 'ի շնորհաց Հոգւոյն սրբոյ՝ ճշմարտութեամբ աճեցուսցուք զվաստակս արդարութեան սուրբ սրտիւ և ուղղափառ հաւատով յԱստուած»:*

Գ. Լուս. 'ի Յաճախապ. ճառ Ք̄:

*«Մեք զայս ճշմարիտ հաւատս ունիմք 'ի Սուրբ Գրոց և յՕրինաց եկեղեցւոյ՝ առաջնորդ կենաց ճանապարհի առ Աստուած»*

Նոյն. յԱփոփ:





# ՀՐԱՀԱՆԳ

## ՔՐԻՍՏՈՆԷԱԿԱՆ ՀԱՒԱՏՈՑ

ԸՍՏ

## ՈՒՂՂԱՓԱՌ ԴԱՒԱՆՈՒԹԵԱՆ

ԵԿԵՂԵՑՒՈՅ

## ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ

---

**Հ.** *Ո՞վ է Քրիստոնէական հաւատոյ առաջին հիմն և բուն հեղինակ։*

**Պ.** *Ի՛նքն Տէրն մեր Յիսուս Քրիստոս։*

**Հ.** *Ի՞նչպէս աւանդեց նա զիւր վարդապետութիւնը։*

**Պ.** *Նախ՝ ինքնին իւր բերանովն՝ բացայայտ բանիւք ուսուցանելով՝ մինչդեռ երկրի վե-*

րայ էր[2], և ապա՝ իւր սուրբ և ընտրեալ Առաքելոց միջնորդութեամբն[3]։

Հ. Առաքեալքն ի՞նչպէս աւանդեցին։

Պ. Երբեմն կենդանի ձայնիւ (բերանով) քարոզելով, և երբեմն ևս գրով հրատարակելով[4]։

Հ. Զի՞նչ պահանջէ 'ի մէնջ Քրիստոնէական հաւատն։

Պ. Պահանջէ, որ մեք զԱստուած՝ զմեր ամենակարող և ամենաբարի Արարիչն՝ պաշտեմք կենդանի Հաւատով, հաստատուն Յուսով, և անկեղծ Սիրով[5]։



# ԳԼ. Ա

## ՀԱՒԱՏՔ

Հ. Հաւատքն ի՞նչ է։

Պ. Է՛ հաւանութիւն մտաց, որով ընդունիմք հաստատաբար և դաւանեմք յայտնապէս զայն ամենայն ճշմարտութիւնքը՝ որք վերաբերին առ Աստուած և առ Աստուածայինս [6]։

Հ. Ուստի՞ պարտիմք առնուլ զբացայայտ և զլխակատար տեղեկութիւնքը այնպիսի ճըշմարտութեանց վերայ։

Պ. Գերբնական Յայտնութեան երկու ստուգագոյն Աղբիւրներից, այսինքն՝ 'ի Ս. Գրոց [7], և յԱստուածային անգիր Աւանդութեանց [8]։

Հ. Ո՞յք են Ս. Գիրքն։

Պ. Հին և Նոր Կտակարանքն են, որք 'ի միասին առեալ՝ կոչին 'ի մեր լեզուի Աստուածաշունչ Մատեան, կամ լոկ՝ Աստուածաշունչ *։

---

* Աստուածաշունչն՝ 'ի մեր մատենագրաց կոչի նաև Աստուա-

Հ. Քանի՞ են Կտակարանաց կանոնական * գրեանքն:

Պ. Հին Կտակարանի կանոնական գրեանքն են քառասուն և հինգ. Նոր Կտակարանին՝ քսան և եօթն. Հնոյն և Նորոյն 'ի միասին՝ եօթանասուն և երկու **:

Հ. Յորպիսի Գրչած գրուած են:

Պ. 'Ի սրբազան Գրչաց, այս է՝ յընտրեալ պաշտօնէից Աստուծոյ ճշմարտի. վասն զի Հին Կտակարանն գրուած է 'ի սրբոց Մարգարէից, և Նորն՝ 'ի սրբոց Առաքելոցն Քրիստոսի [9]:

Հ. Վասն է՞ր Աստուածաշունչ կոչին այն գրեանքն:

---

ծոյին Մովսէսի, Աստուածեղէն Գիրք, Սրբազան Գիր կամ Տառ. բայց նոյն իսկ Աստուածաշնչի մէջ՝ երբեմն կոչի Սուրբ Գիրք (Հռովմ. ա. 2: բ Տիմ. գ. 15), և երբեմն յիշի լոկ անուամբս Գիր (Թուղ. իա. 14: Յովհ. ժԹ. 28. 36. 37: ա Պետ. բ. 6):

* Յաստուածաբանից՝ կանոնականք կոչին այն գրեանքն Հին և Նոր Կտակարանաց, որք 'ի կանոնաց եկեղեցւոյ որոշուած են 'ի շարս վաւերական և Աստուածային գրոց, որպէս և անվաւեր՝ անհարազատ կամ անընդունելի համարուածներն՝ կոչին Անկանոնք:

** Այս ամենայն գրեանց անուանքն՝ որոշակի նշանակուած

Պ. Սակայն այն՝ զի նոցա մէջ պարունակուած բաներն՝ ոչ ըստ կամաց մարդկան կամ մարդկեղէն հանճարով գրուած են, այլ՝ Աստուածային ազդմամբ և Հոգւոյն սրբոյ թելադրութեամբ (դուռն դալով) կամ առաջնորդութեամբ [10]։

Հ. Ո՞յք են Աստուածային անգիր Աւանդութիւնքն։

Պ. Նոյն այն ամենայն Աստուածահրաման պատուէրքն, կամ հաւատոյ և բարուց վարդապետութիւնքն, որք կենդանի ձայնիւ (ժիւոյն բանի- բերանոյ) հաղորդուած են յետնոց, 'ի Հին օրէնս՝ միջնորդութեամբ սրբոց Նահապետաց և Մարգարէից, և 'ի Նոր օրէնս՝ միջնորդութեամբ սրբոց Առաքելոցն Քրիստոսի, և նոցա յաջորդացն, և որք ընդհանուր եկեղեցւոյ մէջ ևս անփոփոխապէս պահպանուած և մնացած են 'ի սկզբանէ անտի մինչև ցայժմ [11] *։

են մեր ընդարձակ Քրիստոնէական Հրահանգի մէջ, որ տպուած է 'ի Մոսկուա յամի Տեառն 1850. Տես անդ յէջ 113—117։

* Ցայտպիսի յԱստուածային—Առաքելական աւանդութեանց

Հ. Որո՞նք են Կտակարանաց կանոնական * գրեանքն։

Պ. Հին Կտակարանի կանոնական գրեանքն են քառասուն և հինգ. Նոր Կտակարանին՝ քսան և եօթն. Հնոյն և Նորոյն 'ի միասին՝ եօթանասուն և երկու **։

Հ. Յորպիսի Գրչաց գրուած են։

Պ. 'Ի սրբազան Գրչաց, այս է՝ յընտրեալ պաշտօնէից Աստուծոյ Ճշմարտի. վասն զի Հին Կտակարանն գրուած է 'ի սրբոց Մարգարէից, և Նորն՝ 'ի սրբոց Առաքելոցն Քրիստոսի [9]։

Հ. Վասն է՞ր Աստուածաշունչ կոչին այն գրեանքն։

---

ձայնն Մովսէսի, Աստուածեղէն Գիր, Երկնային Գիր կամ Ցոյց. բայց նոյն իսկ Աստուածաշնչի մէջ՝ երբեմն կոչի Սուրբ Գիր (Հռոմ. ա. 2։ Բ Տիմ. գ. 15), և երբեմն յիշի լոկ անուամբս Գիր (Թուոց. իա. 14։ Յովհ. ԺԹ. 28. 36. 37։ Ա Պետ. Բ. 6)։

* Յաստուածաբանից՝ կանոնականք կոչին այն գրեանքն Հին և Նոր Կտակարանաց, որք 'ի կանոնաց եկեղեցւոյ որոշուած են 'ի շարս վաւերական և Աստուածային գրոց, որպէս և անվաւեր՝ անհարազատ կամ անընդունելի համարուածներն՝ կոչին Անկանոնք։

** Այս ամենայն գրեանց անուանքն՝ որոշակի նշանակուած

Պ. Ասան այն՝ զի նոցա մէջ պարունակուած բաներն՝ ոչ ըստ կամաց մարդկան կամ մարդկեղէն հանճարով գրուած են, այլ՝ Աստուածային ազդմամբ և Հոգւոյն սրբոյ թելադրութեամբ ([illegible]) կամ առաջնորդութեամբ [10]։

Հ. Ո՞յք են Աստուածային անգիր Աւանդութիւնքն։

Պ. Են այն ամենայն Աստուածահրաման պատուէրքն, կամ հաւատոյ և բարուց վարդապետութիւնքն, որք կենդանի ձայնիւ ([illegible]) հաղորդուած են յետոյ, 'ի Հին օրէնս՝ միջնորդութեամբ սրբոց Նահապետաց և Մարգարէից, և 'ի Նոր օրէնս՝ միջնորդութեամբ սրբոց Առաքելոցն Քրիստոսի, և նոցա յաջորդացն, և որք ընդհանուր եկեղեցւոյ մէջ ևս անփոփոխապէս պահպանուած և մնացած են 'ի սկզբանէ անտի մինչև ցայժմ [11] *։

---

են մեր ընդարձակ Քրիստոնէական Հրահանգի մէջ, որ տպուած է 'ի Մոսկուա յամի Տեառն 1850. Տե՛ս անդ յէջ 113—117։

* Ցայսպիսի յԱստուածային—Առաքելական աւանդութեանց

Հ. Այս՞ արդեօք մի անվրէպ Թարգման (Մեկնիչ) և հաւատարիմ Պահապան Ս. Գրոց, միանգամայն և անսուտ Վկայ և Երաշխաւոր՝ անգիր Աւանդութեանց սորա լինելոյն:

Պ. Այո, և է այն՝ Տիեզերական եկեղեցին Քրիստոսի, որ երբէք չէ սխալուած, և երբէք չկարէ սխալել, Առաջնորդ՝ ուսուցիչ կամ խորհրդատու իւրեան ունելով միշտ զսուրբ Հոգին Ճշմարտութեան [12]:

Հ. Հաւատքն երբ համարի կենդանի:

Պ. Երբ որ սրբակրօն վարուց և առաքինական գործոց հետ կապակցած լինի. վասն զի որպէս մարմին առանց հոգւոյ, նոյնպէս և

---

առուած են և պահին մինչև ցայժմ Քրիստոսի ընդհանուր եկեղեցւոյ մէջ, նախ՝ քանի մի վարդապետութիւնք, որպիսի են այսոքիկ. Հայր Աստուած անծին է. Աստուածածինն է միշտ կոյս. Եկեղեցւոյ խորհուրդքն եօթն են. Զնորածին մանկունքը պարտ է մկրտել. Պատարագն օգնէ և կենդանեաց և ննջեցելոց. և այլն: Երկրորդ՝ քանի մի ծէսք և սովորութիւնք, որպիսի են՝ Երկիրպագանել սրբոյ Խաչի. Յարգել զՍրբոց պատկերքը և զնշխարքը (մարմնոյ կամ ոսկերաց մասունքը). Յարևելեան կողմն աղօթել. Շաբաթի տեղ զԿիւրակէն պահել. Տօնել զՔրիստոսի ծնունդը՝ մկրտութիւնը, և այլն:

հաւատք առանց բարեգործութեան, մե-ռած են[13]:

Հ. Քանի՞ են Հաւատոյ գլխաւոր մասունքն, կամ քանի՞ գլխաւոր Հաւատալիք կան:

Պ. Տասն *, որք են

ա. Գոյութիւն Աստուծոյ:

բ. Կատարելութիւնք Աստուածայինք:

գ. Երրորդութիւն Աստուածային ան-ձանց:

դ. Արարչագործութիւն:

ե. Նախախնամութիւն:

զ. Մարդեղութիւն Աստուածորդւոյն:

է. Եկեղեցի Քրիստոսի, և Խորհուրդք նորին:

ը. Շնորհաբաշխութիւն:

թ. Յարութիւն մեռելոց:

ժ. Վերջին դատաստան:

---

* Զհաւատոյ մասունսն՝ որք կոչին և անդամք կամ աստի-ճանք հաւատոյ, ոմանք բաժանեն 'ի 14, ոմանք 'ի 12՝ ըստ թուոյ Առաքելոց, և ոմանք յ8: Մեզ ևս յայսմ համառօտա-գրութեան պատշաճ թուեցաւ բաժանել 'ի 10: Բովանդակու-թիւնն հաւատալեաց՝ յամենեսին մի և նոյն է:

## Ա. ԳՈՅՈՒԹԻՒՆ ԱՍՏՈՒԾՈՑ

Հ. Ո՞րպէս կարեմք մեք հեշտեաւ իմանալ՝ թէ գոյ (էյ) Աստուած՝ արարիչ ամենայն արարածոց։

Պ. Հայելով յանսուտ վկայութիւնս Ս. Գրոց, որք յայտնաբարբառ քարոզեն՝ թէ գոյ Աստուած. և թէ՝ պարտ է հաւատալ 'ի նա [14]։

Հ. Այլ եղանակաւ ևս կարեմք զԱստուծոյ գոյութիւնը իմանալ և հաստատել։

Պ. Այո, կարեմք զայդ առնել նաև կրկին եղանակօք բնական Աստուածգիտութեան, այսինքն՝ նախ մեր անձին կամ բանական բնութեանս փորձով [15]. և երկրորդ՝ այլ արարածոց քննութեամբ [16]։

Հ. Անձին փորձով որպէս կարեմք առնել։

Պ. Տեսանելով՝ որ մեք գոմք (կամք), խորհիմք (մտածեմք) և կամիմք ազատօրէն, կեամք՝ շարժիմք՝ գործեմք, և այլն. և գիտելով ևս՝ որ մեք անստեղծ կամ ինքնաստեղծ չեմք, և ոչ անսկիզբն և անվախ-

ճան, ինքնին կարող եմք ուղիղ դատողութեամբ մակաբերել՝ թէ «Գո՛յ ուրեմն մի գերագոյն քան զմեզ՝ նախագոյ՝ ինքնագոյ՝ մշտագոյ՝ անեղ՝ անսկիզբն՝ անվախճան՝ ամենակատար Էջ կամ Էակ, անձնիշխան իմացող, Արարող ամենայնի, և ընդհանուր Կառավար, որ այն ինքն է՝ ԱՍՏՈՒԱԾ։

Հ. Արարածոց քննութեամբ ո՞րպէս կարեմք առնել։

Պ. Ուշի ուշով (մտադրութեամբ) հայելով անթիւ արարածոց վերայ, որք առհասարակ հրաշակերտ (ստեղծել) գործքեր են, և ինքնին գրեթէ ցուցանեն՝ և իբր փողով հրաչակեն զիւրեանց Արարչի անսահման և գերաբուն զօրութիւնը, մեծութիւնը, բարութիւնը, իմաստութիւնը, և նախախնամութիւնը [17]։

Հ. Ո՞յք կարողացան այդ ճանապարհաւդ Աստուածածանօթ լինել։

Պ. Քանի մի անձինք 'ի հեթանոս փիլիսոփայից. վասն զի ոչ ամենքն բաւական (կա-

բող) էին իմաստասիրաբար 'ի քննութիւն արարածոց կամ բնութեան պարապելու [18]:

Հ. Արդեօք՝ ուր այդպէս բնական լուսով ([illegible]) զԱստուած ճանաչեցին, պաշտեցի՞ն զնա ըստ արժանւոյն:

Պ. Ո՛չ [19]. վասն զի այն բնական աղօտ և նուաղ լոյսն զոր ունէին՝ կարող չէր առաջնորդել նոցա 'ի ճանապարհ կատարեալ և ճշմարիտ Աստուածպաշտութեան: Նաև որ աւելի ողբալին է, շատերն յայնպիսեաց յետին անմտութեամբ զԱստուծոյ Արարչի վայելչական պաշտօնը (որով և փառքը) արարածոց և ձեռագործաց մատուցանելով՝ կռապաշտութեան խաւարի մէջ մնացին [20]:

Հ. Աստուած ի՞նչ է:

Պ. Աստուծոյ ի՛նչ լինելն ըստ բնութեանն կամ էութեանն՝ անզննելի և անհասանելի է յամենայն ստեղծականս (մարդկային և հրեշտակային) մտաց [21]: Այսչափ կարեմք մեզ գիտել միայն՝ թէ ի՛նչ չէ՛ նա [22]:

Հ. Ի՞նչ մեզ [illegible] զԱստուած. Աստուած լոյս է. Հոգի է» (Յովհ. Դ.

24: ա. Յովհ. ա. 5: Եբր. ժբ. 29):

Գ. Այդ բաներդ՝ և այլ այսպիսիք՝ միայն այլաբանաբար (այսինքն՝ փոխաբերական մտօք, օրինակաւ, նմանութեամբ) կարեն ասուիլ Աստուծոյ վերայ, յայտնի առնելոյ համար՝ թէ նա՝ անհիւթական բնութիւն է՝ իբրև հոգի. ամենապայծառ է էութեամբն՝ իբրև լոյս. ամենամաքուր է՝ իբրև հուր[23]:

Հ. Աստուած յումմէ՞ եղև:

Գ. Չեղև նա յումեքէ, ըստ որում անեղ և ինքնագոյ բնութիւն է[24]:

Հ. Եղա՞ծ է արդեօք ժամանակ՝ յորում չկայր Աստուած:

Գ. Ամենևին ո՛չ[25]. վասն զի կայր նա միշտ, կա՛յ յայժմուս, և պիտի լինի՛ յանվախճան յաւիտեանս[26]:

Հ. Աստուծոյ անունն ի՞նչ է:

Գ. Աստուծոյ էութիւնը կամ բնութիւնը յայտնօղ՝ անուն՝ չկայ և ո՛չ մի[27]. վասն որոյ ասի՝ թէ Անանուն է նա կամ Բազմանուն[28]: Բայց նորա գործքերը և զանազան կատարելութիւնքը յայտնօղ՝ անուանք՝

շնոր կան [29]. որպիսի են՝ Աստուած, Տէր, Տէր Աստուած, Տէր ամենակալ, Արարիչ, Ստեղծիչ, Հայր, Իշխան, Դատաւոր, Թագաւոր յաւիտենական [30], և այլն։ Նաև այսու պատճառաւ ևս կոչի նա Բազմանուն [31]։

Հ. Զ՞ինչ ուրեմն կամեցաւ Աստուած յայտնել մարգարէին Մովսիսի՝ ասելովն «Ես եմ Աստուած ՈՐ Է՛Ն» (Ել. գ. 14)։

Պ. Կամեցաւ յայտնել՝ թէ ինքն է ինքնագոյ, անսկի՛զբն, անվախճան, միշտ Է՛ կամ Է՛ և Է՛ [32]։ Վասն զի ՈՐ Է՛Ն (Եբրայեցերէն Եէօվա կամ Եէհովահ *) քառատառեան անունն՝ այսպիսի՛ ունի նշանակութիւն, ըստ բացատրելոյ լեզուահմուտ Մեկնչաց։

Հ. Ի յիշատակեալ անուանցդ ո՞րն առաւել գործածական է 'ի մեր լեզուի։

---

* Անունս ԵԷՀՈՎԱՀ, կամ՝ ըստ գրելոյ ճոխ Բարսղի ('ի Մեկն. Մարկ. ճառ. ԺԷ) և այլոց՝ ԱՀԻԱՀ, Քառատառ՝ Քառատառեան կամ Չորեքգրեան կոչի (տե՛ս Նարեկ. 'ի Գով. Աստ. և տե՛ս Ոսկեր. 'ի Մեկն. Եսայ.) այսու պատճառաւ, որ առ Եբրայեցիս չորս նշանագրօք գրի, որք են՝ Եօդ, Հէ, Վաւ, Հէ. մանաւանդ զի առ մեզ ևս քառագիր է Թարգմանութիւնն նոյն անուան՝ ՈՐ ԷՆ։

Գ. Անունն՝ ԱՍՏՈՒԱԾ *. որ՝ ըստ գրե-
լոյ [35] մեր բանիբուն վարդապետաց՝ Երրոր-
դութեան անուն է՝ և ստուգաբանի «յոչէ
կամ յոչնչէ ած [34]», այսինքն՝ Հաստեաց,
Հաստատեաց, Ստեղծ: Բայց կան Հին Կտա-
կարանի Հայերէն Թարգմանութեան մէջ
և այլ քանի մի Եբրայական անուանք Աս-
տուծոյ:

Հ. Ո՞րք են այն անուանքն:

Գ. Այսոքիկ են՝

Ադոնայէ (այսինքն՝ Տէր):
Սադդայէ (այսինքն՝ Ամենաբաւական, Ամենատէր)

---

* Թէպէտ և Ս. Գրոց մէջ՝ Աստուած անունս ընծայուած է երբեմն և հրեշտակաց, եւ և ոմանց յԱստուածամերձ մարդոց (տես 'ի Ծնն. ԺԸ. 1: Ել. Է. 1: Իբ. 28: Սաղմ. ձա. 1. 6: Յովհ. Ժ. 34). բայց այդ եղած է միայն պատուոյ համար, որպէս ցուցանեն հետևեալ վկայութիւնք. «Անուն Աստուածութեանն 'ի մեծ պատիւ տուաւ. և ում կամեցաւ Աստուած՝ ետ զնա» (Յ. Մծբն. Ճառ ԺԷ): «Անուն Աստուծոյ կայ միայն և առ մարդոյ, զի կոչեցան ոմանք աստուածք...: Կոչեցաւ մարդ՝ աստուած, որպէս և Մովսէս 'ի վերայ փարաւոնի» (Եփր. 'ի համաբարբառ. գլ. ԺԹ): «Մովսէս՝ փարաւոնի աստուած, բայց Աստուծոյ՝ ծառայ գրեալ է» (Գրիգ. Աստուածաբ. յԱռ որս, Ճառ Ը):

Նուէ (այսինքն՝ Աստուած ողորմութեանց)։
Տէր Սաբաւովթ (այսինքն՝ Տէր զօրութեանց)[35]։

Հ. Ո՞ր է Աստուծոյ բնակութեան տեղին։

Պ. Աստուած՝ անբովանդակելի բնութիւն գոլով՝ տեղւոյ կարօտութիւն չունի[36], բայց զօրութեամբ յամենայն տեղիս է և մօտ է ամենեցուն[37]. և շնորհօք բնակի արդարոց սրտից մէջ[38]։

Հ. Ուրեմն ի՞նչ է պատճառն՝ որ ասի թէ, «Նորա աթոռն յերկինս է», կամ թէ «Երկինքն աթոռ են Նորա» (Սաղմ. Ժ. 5։ Եսայ. կզ. 1)։

Պ. Պատճառն է, նախ՝ զի Նորա մեծվայելչութեան փառաց և ահաւորութեան նշանքն՝ առաւելապէս յերկինս երևին՝ մեծամեծ՝ զարմանալի՝ լուսաւոր արարածներով։ Եւ երկրորդ՝ զի հրեշտակքն և սրբոց հոգիքն յերկինս են[39]։

Հ. ԶԱստուած տեսած է ոք երբէք կամ կարէ՞ տեսանել։

Պ. Ոչ տեսած է, և ոչ տեսանել կարէ[40]. վասն զի զանմարմին էութիւնը՝ ըստ իւր·

բնութեան (այսինքն՝ էութեան, որպէս է յինքեան)՝ անհնարին է մարմնական աչօք տեսանել[41]:

Ճ. Քանի՞ Աստուածք կան:

Պ. Մի միայն է ճշմարիտ Աստուածն *. և բաց 'ի Միոյն՝ չկայ այլ Աստուած բնութեամբ[42]: Իսկ դիքն կամ կուռքերն՝ ստութեամբ և անուամբ միայն կոչուեցան աստուած՝ և ոչ բնութեամբ[43]:

---

* Այսպէս դաւանելով և ուսուցանելով կաթուղիկէ Ս. Եկեղեցին՝ հերքէ նախ զկռապաշտից բազմաստուածեան մոլորութիւնքը. և երկրորդ՝ զՄանիքեցւոց իւր վարդապետութիւնը, որք հետևելով մոլորական կարծեաց Մանեայ կամ Մանիքեոսի Կուրբիկոսի (որ երրորդ դարու աղանդապետաց մինն էր), երկու սկիզբն կամ երկու արարիչ քարոզէին. զորոց և զմին՝ բարեաց աղբիւր համարելով՝ կոչէին Բարի աստուած, և զմիւսն՝ չարեաց պատճառ համարելով՝ կոչէին Չար աստուած: (Տես առ Կիւրղի Երուս. 'ի Կոչ. ընծ. գլ. զ̃): Սորա դատապարտեցան զանազան ժողովոց մէջ, բայց մոլորութիւնքն երկար ժամանակ տևեցին. զորս չորրորդ դարումն Օգոստինոս վարդապետն Լատինաց. և հինգերորդ դարումն՝ մեր կորովաբան վարդապետն Եզնիկ Կողբացի, զօրաւոր գրուածովք հերքեցին:

## Բ. ԱՍՏՈՒԱԾԱՅԻՆ ԿԱՏԱՐԵԼՈՒԹԻՒՆՔ

Հ. Աստուած ո՞րպիսի կատարելութիւնք ունի։

Պ. Նա՝ ամենակատար բնութիւն գոլով [44], ունի և ամենայնպիսի կատարելութիւնք՝ որք նմա միայն պատկանին. վասն զի է նա Անփոփոխ [45], Անչափ կամ Անսահման [46], Ամենակարող [47], Անձնիշխան [48], Ամենագէտ կամ Ամենիմաստ [49], Պարզագոյն կամ Ամենապարզ [50], Աշտնջենաւոր կամ Յաւիտենական [51], Անման [52], Ամենաբարի [53], Ամենասուրբ [54], Ամենավայր, (այսինքն՝ յամենայն տեղիս ներկայ) [55], և այլն։

---

## Գ. ԵՐՐՈՐԴՈՒԹԻՒՆ ԱՍՏՈՒԱԾԱՅԻՆ ԱՆՁԱՆՑ

Հ. Աստուածային անձինք քանի՞ են։

Պ. Երեք են, և քան զերեքը ոչ աւելի, և ոչ պակաս [56]։

Հ. Ուրեմն երեք Աստուած կայ, կամ երեք Աստուածութիւն։

Պ. Ո՛չ երեք Աստուած, և ոչ երեք Աստուա-

ծութիւն, այլ՝ մի Աստուած, և մի Աստուածութիւն յերիս անձինս [57]։ Վասն որոյ զամենասուրբ Երրորդութիւնը՝ ըստ ճշմարտուսոյց վարդապետութեան Կաթողիկէ և Առաքելական եկեղեցւոյ՝ պարտիմք դաւանել «Երեք անձինք և մի բնութիւն, մի Աստուածութիւն [58]»։

Հ. Ասա զերից անձանց անուանքը։

Պ. Առաջինն է և կոչի Հայր. երկրորդն՝ Որդի, Բան, Միածին Հօր. երրորդն՝ Հոգի Սուրբ, Հոգի Աստուծոյ, Հոգի Ճշմարտութեան [59]։

Հ. Ինչո՞վ կարեմք ամենասուրբ Երրորդութեան խորհրդոյն ծանօթանալ։

Պ. Մ՛իայն հաւատով՝ ըստ յայտնութեանցըն [60], որք պարունակուած են՝ Հին Կտակարանի մէջ՝ աղօտ բանիւք (իբր ընդ քօղով) [61], և Նոր Կտակարանի մէջ՝ բացայայտ և որոշ բանիւք։

Հ. Հին Կտակարանի մէջ ի՞նչ բանք կան սուրբ Երրորդութեան վերայ։

Պ. Ծ՛ննդոց գրքի մէջ կան այս բանքս՝ 'ի դիմաց Աստուծոյ ասացեալ. «Արասցուք

## Բ. ԱՍՏՈՒԱԾԱՅԻՆ ԿԱՏԱՐԵԼՈՒԹԻՒՆՔ

Հ. Աստուած ո՞րպիսի կատարելութիւնս ունի։

Պ. Նա՝ ամենակատար բնութիւն գոլով [44], ունի և այնպիսի կատարելութիւնս՝ որք նմա միայն պատկանին. վասն զի է նա Անփոփոխ [45], Անչափ կամ Անսահման [46], Ամենակարող [47], Անձնիշխան [48], Ամենագէտ կամ Ամենիմաստ [49], Պարզագոյն կամ Ամենապարզ [50], Մշտնջենաւոր կամ Յաւիտենական [51], Անմահ [52], Ամենաբարի [53], Ամենասուրբ [54], Ամենավայր, (այսինքն՝ յամենայն տեղիս ներկայ) [55], և այլն։

---

## Գ. ԵՐՐՈՐԴՈՒԹԻՒՆ ԱՍՏՈՒԱԾԱՅԻՆ ԱՆՁԱՆՑ

Հ. Աստուածային անձինք քանի՞ են։

Պ. Երեք են, և քան զերեքը ոչ աւելի, և ոչ պակաս [56]։

Հ. Արդեօք երեք Աստուած կայ, կամ երեք Աստուածութիւն։

Պ. Ո՛չ երեք Աստուած, և ոչ երեք Աստուա-

ծութիւն, այլ՝ մի Աստուած, և մի Աստուածութիւն յերիս անձինս [57]: Վասն որոյ զամենասուրբ Երրորդութիւնը՝ ըստ ճշմարտուսոյց վարդապետութեան Կաթողիկէ և Առաքելական եկեղեցւոյ՝ պարտիմք դաւանել «Երեք անձինք և մի բնութիւն, մի Աստուածութիւն [58]»:

Հ. Ասա զերից անձանց անուանքը:

Պ. Առաջինն է և կոչի Հայր. երկրորդն՝ Որդի, Բան, Միածին Հօր. երրորդն՝ Հոգի Սուրբ, Հոգի Աստուծոյ, Հոգի ճշմարտութեան [59]:

Հ. Ինչո՞վ կարեմք ամենասուրբ Երրորդութեան խորհրդոյն ծանօթանալ:

Պ. Միայն հաւատով՝ ըստ յայտնութեանցն [60], որք պարունակուած են՝ Հին Կտակարանի մէջ՝ աղօտ բանիւք (իբր ընդ քօղով) [61], և Նոր Կտակարանի մէջ՝ բացայայտ և որոշ բանիւք:

Հ. Հին Կտակարանի մէջ ի՞նչ բանք կան սուրբ Երրորդութեան վերայ:

Պ. Ծննդոց գրքի մէջ կան այս բանքս՝ ՚ի դիմաց Աստուծոյ ասացեալ. «Արասցուք

մարդ ըստ պատկերի մերում... Արաս-
ցուք դմա * օգնական... Ա՛հա Ադամ եղև
իբրև զմի 'ի մէնջ... Եկայք իջցուք և խառ-
նակեսցուք զլեզուս նոցա ** » (Ծնն. ա.
26: բ. 18: գ. 22: ժա. 7): Իսկ այս բանից
մէջ յոգնական բայքս՝ Արասցուք, Եկայք,
Իջցուք, Խառնակեսցուք, և յոգնակական դերա-
նուանքս՝ Մերում 'ի Մէնջ, անշուշտ զԱս-
տուածային անձանց բազմութիւնը ***
ցուցանեն [62]:

Զ. Ո՞յլ մարգարէից գրուածոց մէջ ևս կա՞ն
այդպիսի բանք:

Գ. Կա՛ն ոչ սակաւ. յորոց մի է և այս բան
Դաւթի մարգարէին. «Երրորդութեամբ
Տեառն (Հօր Աստուծոյ) լի եղև երկինք. և
Բանիւ Տեառն (Որդւոյն) երկինք հաստա-
տեցան. և Հոգւով բերանոյ նորա (Հոգւոյն
սրբոյ) ամենայն զօրութիւնք նոցա» (Սաղ.
լբ. 5. 6) [63]:

---

* Այսինքն՝ Աստուծոյ:

** Այսինքն՝ շինողաց Բաբելոնեան աշտարակին:

*** Այսինքն՝ երեք դէմք ասելն լինելը:

Հ. Նոր Կտակարանի մէջ ի՞նչ որոշ յայտնու-
թիւնք կան սուրբ Երրորդութեան վերայ։

Պ. Առաջին որոշ յայտնութիւնն այն է՝ որ պատմի, թէ երբ որ մկրտուեցաւ Քրիստոս Յովհաննէս Մկրտչէն, լսուեցաւ Հօր Աստուծոյ ձայնն յերկնից. «Դա՛ է Որդի իմ սիրելի, ընդ որ հաճեցայ». և թէ՝ Հոգին սուրբ ևս աղաւնակերպ իջաւ Քրիստոսի վերայ (Մատ. գ. 16. 17)։ Եւ երկրորդ որոշ յայտնութիւնն այն է՝ որ պատմի, թէ Քրիստոս երբ որ հրաման տուաւ Առաքելոց՝ երթալ յամենայն աշխարհ 'ի քարոզութիւն, ասաց «Աշակերտեցէք զամենայն հեթանոսս. մկրտեցէք զնոսա յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ» (Մատ. իը. 19)։

Հ. Աստուածային անձինք ինչո՞վ բաժանին կամ որոշին 'ի միմեանց։

Պ. Միայն անձնաւորութեամբ. վասն զի այլ է Հօր անձն, այլ է Որդւոյ անձն, և այլ է Հոգւոյն սրբոյ անձն [64] *։

* Յերրորդ դարու, Սաբէլեան աղանդաւորքն՝ որոց առաջ-

մարդ ըստ պատկերի մերում... Արասցուք դմա * օգնական... Ահա Ադամ եղև իբրև զմի 'ի մէնջ... Եկայք իջցուք և խառնակեսցուք զլեզուս նոցա **» (Ծննդ. ա. 26: բ. 18: գ. 22: ժա. 7): Իսկ այս բանից մէջ յոգնական բայերը՝ Արասցուք, Եկէք, Իջցուք, Խառնակեսցուք, և յոգնական դերանունները՝ Մերում, 'ի Մէնջ, անշուշտ զԱստուածային անձանց բազմութիւնը *** ցուցանեն [62]:

Հ. Այլ մարգարէից գրուածոց մէջ ևս կա՞ն այդպիսի բաներ:

Պ. Կան ոչ սակաւ, յորոց մին է և այս բան Դաւթի մարգարէին. «Ողորմութեամբ Տեառն (Հօր Աստուծոյ) լի՛ եղև երկիր. և Բանիւ Տեառն (Որդւով) երկինք հաստատեցան. և Հոգւով բերանոյ նորա (Հոգւով սրբով) ամենայն զօրութիւնք նոցա» (Սաղ. լբ. 5. 6) [63]:

---

* Այսինքն՝ Ադամայ:

** Այսինքն՝ շինողաց Բաբելոնեան աշտարակին:

*** Այսինքն՝ քան զմի աւելի լինելը:

Հ. Նոր Կտակարանի մէջ ի՞նչ որոշ յայտնու-
թիւնք կան սուրբ Երրորդութեան վերայ։

Պ. Առաջին որոշ յայտնութիւնն այն է՝ որ
պատմի, թէ երբ որ մկրտուեցաւ Քրիս-
տոս Յովհաննէս Մկրտչէն, լսուեցաւ Հօր
Աստուծոյ ձայնն յերկնից. «Դա՛ է Որդի իմ
սիրելի, ընդ որ հաճեցայ». և թէ՝ Հոգին
սուրբ ևս աղաւնակերպ իջաւ Քրիստոսի
վերայ (Մատ. գ. 16. 17)։ Իսկ երկրորդ ո-
րոշ յայտնութիւնն այն է՝ որ պատմի, թէ
Քրիստոս երբ որ հրաման տուաւ Առա-
քելոց՝ երթալ յամենայն աշխարհ 'ի քա-
րոզութիւն, ասաց «Աշակերտեցէք զամե-
նայն հեթանոսս. մկրտեցէք զնոսա յանուն
Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ» (Մատ.
իը. 19)։

Հ. Աստուածային անձինք ինչո՞վ բաժանին
կամ որոշին 'ի միմեանց։

Պ. Միայն անձնաւորութեամբ. վասն զի այլ
է Հօր անձն, այլ է Որդւոյ անձն, և այլ
է Հոգւոյն սրբոյ անձն [64] *։

---

* Յերրորդ դարու, Սաբէլեան աղանդաւորքն՝ որոց առաջ-

Հ. Ա՞յն նոցա մէջ մեծ և փոքր, կամ բարձր և նուաստ կամ առաւել և նուազ։

Պ. Ո՛չ[65]. վասն զի երեքն ևս մի և նոյն են էութեամբ և բնութեամբ, և հաւասար իսկ են զօրութեամբ՝ իշխանութեամբ՝ պատուով և փառօք[66] *։

---

նորդ եղած էր Սաբէլ անուն երէց մի Լիբէացի, չընդունէին զԱստուածային անձանց 'ի միմեանց զանազանութիւնը, այլ զերեքը 'ի մի խառնակելով՝ մի անձն միայն դնէին յԱստուածային էութեան. և «Նոյն մի անձն է, ասէին, որ երբեմն Հայր անուանի, երբեմն՝ Որդի, և երբեմն՝ Հոգի սուրբ, են»։ Սոցա ընդդէմ գնեցան զօրաւոր գրուածովք Ս. Աթանաս Հայրապետն Աղեքսանդրիոյ, Ս Բարսեղ Կեսարացի, Ս. Գրիգոր Նիւսացի, և այլք։ Մեր երանեալ Հարքն և Հոգեշնորհ վարդապետքն ևս յիշեն իւրեանց գրուածոց մէջ զնոյն աղանդաւորքը՝ հերքելով միանգամայն զնոցա մոլորական կարծիքները։ Տե՛ս յընդարձակ Հրահանգն. յէջ 151. 168. 171։

* Արիոս երէցն Աղեքսանդրացի զերից անձանց հաւասարութիւնը ուրանայր՝ ուսուցանելով, թէ Որդին ոչ է հօր համագոյակից, այլ՝ օտար, արարած, կրտսեր և յետ ժամանակի գոյացած։ Նոյնպէս և Մակեդոն պատրիարքն Կ. Պօլսի ուրանայր զՀոգւոյն սրբոյ Աստուածութիւնը՝ ասելով, թէ օտար է նա 'ի բնութենէն Աստուծոյ, ուստի և ոչ է երկրպագելի ընդ Հօր և Որդւոյ։ Զառաջինոյն մոլորութիւնը հերքեց և դատապարտեց Նիկիոյ առաջին տիեզերական ժողովն յամի Տեառն 325, և զերկրորդինը՝ Կ. Պօլսի երկրորդ տիեզերական ժողովն յամի Տեառն 381։ Զմեր սուրբ վարդապետաց բանքը ընդդէմ

Հ. Ո՞ւնին նորա առանձին առանձին յատկու-
թիւնք։

Պ. Այո՛, ունին միայն անձնաւորական յատ-
կութիւնք, զորս մեր ամենեբանեան Հայրն
Հաւատոյ՝ սուրբն Գրիգոր Լուսաւորիչ
այսպէս բանիւս լուսաբանէ. «Հայր՝ չծը-
նեալ՝ և ծնօղ է. Որդին՝ չծնօղ՝ և ծնունդ
է. և Հոգին սուրբ՝ ոչ ծնօղ և ոչ ծնունդ,
այլ՝ ելօղ [67]» (յԱգաթ. յէջ 397. ըստ
Հին տպ.)։

Հ. Յումմէ՞ յառաջագային կամ ունին զիւր-
եանց ծագումն՝ Որդին և Հոգին սուրբ։

Պ. Ի միոջէ միայն յանսկզբնական Հօրէ յԱս-
տուծոյ [68]. քանզի 'ի Նմանէ է Որդին՝ ան-
մարմնաբար յաւիտենական ծննդեամբ [69].
'ի Նմանէ է և Հոգին սուրբ՝ անհատա-
բար մշտնջենաւոր բղխմամբ [70]։ Ի Նմանէ
են երկոքեան, որպէս բոց և ջերմութիւն՝
'ի Հրոյ, որպէս ճառագայթ և տապ՝ յա-
րեգականէ [71]։

---

տուածաբանութեան Հերետիկոսացելոց՝ տե՛ս յընդարձակ Հրա-
Հանգն, յէջ 169. 170։

Հ. Հայր միայն է ուրեմն պատճառ Որդւոյ և Հոգւոյն սրբոյ։

Պ. Այո՛ [72], որպէս խոստովանին ուղղափառա-պէս մեր Հայրապետաց Ս. Ներսէսի՝ բանիւ Շնորհալւոյ Հայրապետին

«Աստուած անեղ անժամանակ,
Հայր անսկիզբն և անքանակ,
Որդւոյ պատճառ՝ ծննդեամբ անճառ,
Հոգւոյն՝ բղխմամբ անքննապար [73]»։

(Ի Հաւատ. խոստով. Շնորհ.)։

Հ. Եղա՞ծ է ժամանակ՝ յորում չէին Որ-դին և Հոգին սուրբ։

Պ. Ո՛չ երբէք. վասն զի երկոքին ևս անսկզբնա-կիցք և մշտնջենաւորակիցք են Հօր Աս-տուծոյ [74]։ Ո՛չ Հայրն յառաջ է քան զՈր-դին, և ո՛չ Որդին յառաջ է քան զՀոգին սուրբ [75]։

---

## Դ. ԱՐԱՐՉԱԳՈՐԾՈՒԹԻՒՆ

Հ. Արարչագործութիւնն ի՞նչ է։

Պ. Է՛ ազատ գործողութիւն երեքանձնեայ

Աստուածութեան * առ արտաքս, որով յոչնչէ ստեղծուեցան ամենայն երեւելի և աներեւոյթ արարածք[76]։

Հ. Ո՞յք են երեւելի արարածքն, և ո՞յք աներեւոյթքն։

Պ. Երեւելի կոչին այն արարածքն՝ որոց հնար է մարմնական աչաց տեսութեան տակ անկանիլ, որպիսի են՝ երկինք, և ինչ որ կայ անդ. երկիր, և ինչ որ կայ նորա վերայ։ Իսկ աներեւոյթ արարածք ասին լոկ հոգեղէն ստեղծուած էակքն, յն՝ մարդոց հոգիքն, և հրեշտակքն (թէ բարիք և թէ չարք)։

---

## Ե. ՆԱԽԱԽՆԱՄՈՒԹԻՒՆ

Հ. Նախախնամութիւնն ի՞նչ է։

Պ. Նախախնամութիւն ասի այն Աստուածային բարեխնամ Տեսչութիւնն, որով Նա ինքն ամենակարող և ամենաբարի Արարիչն՝ ըստ իւր կամացն հաճութեան՝ խնա-

---

* Այսինքն՝ Ս. Երրորդութիւնն։

մէ զամենայն արարածքը և պահէ իւրեանց գոյութեանը մէջ, եւ և կառավարէ՝ զիւրաքանչիւրը դէպ յիւր վախճանն ուղղելով[77]:

---

## Ջ. ՄԱՐԴԵՂՈՒԹԻՒՆ ԱՍՏՈՒԱԾՈՐԴԻՈՑՆ

Հ. Ի՞նչ է Աստուածորդւոյ մարդեղութիւնն:

Պ. Էջ՝ մարմնանալն և մարդանալն Որդւոյն Աստուծոյ կամ Բանին՝ Հօր և Հոգւոյն սրբոյ հաճութեամբ[78]:

Հ. Զիա՞րդ եղև այն:

Պ. Որդին Աստուծոյ զմարդկային բնութիւնը առնլով յարենէ սրբոյ Կուսին Մարիամու, և միաւորելով զայն իւր անեղական բնութեանը հետ, եղև կատարեալ մարդ՝ կատարեալ Աստուածութեամբ[79]:

Հ. Երկո՞ւ բնութիւնք էին ուրեմն յԱստուածն մարդացեալ:

Պ. Այո՛. վասն զի նոյն ինքն՝ Աստուած էր և մարդ միանգամայն. Աստուած էր՝ Աստ-

ուածային բնութեամբ, և մարդ՝ մարդկային բնութեամբ [80]:

Հ. Երկո՞ւ էին և անձինք:

Պ. Ո՛չ, այլ՝ մի միայն, և այն՝ ոչ մարդկային, այլ՝ Աստուածային, յորում երկաքանչիւր բնութիւնքն՝ (Աստուածայինն և մարդկայինն) միաւորուեցան (միացան 'ի մի անձնաւորութիւն) անբաժանաբար և անշփոթապէս [81]: Ուստի զնոյն իսկ զմիացեալն յերկուց բնութեանց՝ մի անձն խոստովանիմք, մի դէմ, և մի Տէր՝ Յիսուս Քրիստոս [82]:

Հ. Կարելի՞ է ուրեմն՝ ուղիղ մտօք «Մի բնութիւն կամ երկու բնութիւն ասել բանին մարմնացելոյ»:

Պ. Կարելի է, որպէս ասացին յառաջին ժամանակս սուրբ և ուղղափառ Վարդապետք՝ ընդդէմ Նեստորի և Եւտիքէսի մոլորութեանցն * [83]:

Հ. Բանն Աստուած՝ 'ի մարմնանալն՝ առա՞ւ զայն ամենայն՝ որ ինչ է 'ի մարդ, (այսին-

* Այս երկու հերետիկոսապետքս երևեցան 'ի միում ժամանակի. այսինքն՝ 'ի հինգերորդ դարու: Նեստոր երկու բնութիւն ասելով՝ զմի Քրիստոսն յերկուս անձնաւորութիւնս կամ յեր-

քըն՝ զայն ամենայն՝ որովք է և ասի մարդըն՝ չէնթանի բնական կամ մարդ կարօտեալ):

Գ. Նոյն. վասն զի ոչ միայն մարմին առաւ Նա յայնժամ, այլև ստեղծական մարդկային (բանական) հոգի հանդերձ իմացական կարողութեամբ, որ է միտք *[84]:

կուս որդիս բաժանէր. այլ որդի ասէր զծնեալն ՚ի Մարիամայ, և այլ որդի՝ զծնեալն ՚ի Հօրէ յաւիտենականէ: Ուստի և զԸ Մարիամ ոչ խոստովանէր Աստուածածին (ծնող Աստուծոյ). այլ Քրիստոսածին. և Քրիստոս ասելով՝ իմանայր մարդ ծնեալ, և ոչ Աստուած մարդացեալ: Իսկ Եւտիքէս կամելով՝ Նեստորի մոլորութեանը հակառակիլ՝ ի բնութիւն ասաց ՚ի Քրիստոս՝ թիւր միտք, այսինքն՝ պնդելով, թէ Աստուածային և մարդկային բնութիւնքն մի եղեն շփոթմամբ և այլայլութեամբ, այնպէս՝ որ բնութեանց յատկութիւնքն չպահուեցան կամ անկորուստ չմնացին. և այլն: Երկոցունց մոլորութիւնքն ևս հերքուած են ՚ի սրբոց Հարց և յուղղափառ վարդապետաց թէ՛ մեր եկեղեցւոյ և թէ՛ այլոց քրիստոնէից: Տե՛ս յընդարձ. Հրահանգն. յէջ 276 — 278. 280 — 282:

, * Ապողինար եպիսկոպոսն Լաւոդիկէ քաղաքի յԱսորիս, և և հետևողք նորա՝ Ապողինարիոսք, չորրորդ դարումը, ուրանային զայս ճշմարտութիւնս, ուսուցանելով՝ թէ Բանն Աստուած մարմին միայն առաւ՝ առանց մարդկային հոգւոյ, կամ թէ՝ առաւ և հոգի՝ բայց առանց մտաց: Ընդդէմ այսպիսի խոտորնակ կարծեաց սոցա՝ ճառեր գրեցին Ս. Աթանաս Հայրապետն Աղեքսանդրիոյ, Ս. Գրիգոր Նազիանզացի (Աստուածաբան), Ս. Գրիգոր Նիւսացի, Յովհան Ոսկեբերան, և այլք: Իսկ զմեր ճշմար-

Հ. Մարդկային կիրք եւս կրէ՞ր։

Պ. Այո՛, կրէր՝ բայց կամաւորապէս, իշխանաբար, եւ առանց մեղաց. վասն զի յանձն առաւ նա միայն զայն անարգոմնելի (անդա-խօրօնէյմ) բնաւորական կիրքերը մարմնոյ եւ ոգւոյ՝ որք առհասարակ ամենայն մարդոց կամ բոլոր մարդկային բնութեանս պատշաճին, որպիսի են՝ քաղցենալ, ծարաւիլ, վաստակիլ (խոճլէւ. յօգնէլ), տրտմիլ, հոգալ, արտասուել, երկնչել (երկէ-ղ կէրէւ), եւ այլն[85]։

Հ. Ունէ՞ր նա՝ եւ Աստուածային կամք եւ մարդկային կամք, եւս եւ Աստուածային ներգործութիւն եւ մարդկային ներգործութիւն։

Պ. Այո՛. վասն զի երբ որ զԱստուածութեան զօրութիւնը կամէր ցուցանել՝ զԱստուածայինքը ներգործէր Աստուածաբա՛ր, (որպէս Աստուած). եւ երբ որ զմարդկութեան խոնարհութիւնը կամէր յայտնել՝ զմարդ-

---

տաքարող սուրբ վարդապետաց բանքը ընդդէմ մոլորութեան հերետիկոսաց՝ տես յընդարձ. Հրահանգն, յէջ 278. 279։

կայինքը ներգործէր մարդկաբար (աստուածամարդ) * [86]։

Հ․ Երկու կամքն (Աստուածայինն և մարդկայինն) 'ի մարդացեալն Աստուած՝ չհակառակէի՞ն միմեանց։

Պ․ Ո՛չ․ վասն զի մարդկային կամքն հետևէր (հնազանդէր) միշտ Աստուածային կամացն [87]։

Հ․ Ո՞րք անուանքք կոչեցաւ Բանն Աստուած՝ յետ մարդեղութեանն։

Պ․ Յետ մարդեղութեանն՝ յատկացան նմա անուանքս՝ Յիսուս, Քրիստոս, Մեսիա, Էմմանուէլ [88]․ յորոց առաջինն՝ Թարգմանի

---

* Եօթներորդ դարուն երևեցան այնպիսի հերետիկոսք՝ Յունաց և Ասորւոց մէջ, որք յեւտիքական մոլորութէն այլ իմն նոր մոլորութի ծնուցին՝ դաւանելով 'ի Քրիստոս մի միայն կամք և մի միայն ներգործութի, որք և կոչեցան Միակամեայք կամ Միակամադաւանք։ Նոցա թիւր կարծիքն մերժուեցան և դատապարտուեցան ժողովներով և մասնաւոր գրուածներով 'ի Յունաց և 'ի Լատինացւոց։ Թէպէտ և մեր ազգի մէջ այս՝ և այլ այսպիսի հերետիկոսական մոլորութեանց հետևող ոք չէ եղած, այլ այնու ամենայնիւ երանաշնորհ վարդապետքն Ս. Եկեղեցւոյս Հայաստանեայց չեն դանդաղած ընդդէմ զինիլ այնպիսի մոլար վարդապետութեանց, որում ապացոյց են՝ նոցա ողջամիտ գրուածքն, զորս ունիմք 'ի մէջ բերել 'ի կարգի վկայութեանց՝ գրքիս վերջումը։

Փրկիչ. երկրորդն և երրորդն՝ Օծեալ. իսկ չորրորդն՝ Ընդ մեզ Աստուած[89]։

Հ. Վասն է՞ր կոչեցաւ Նա Փրկիչ։

Պ. Վասն այն՝ զի Նորա մարդեղութիւնն կամ յաշխարհ գալն մարմնով՝ եղև միայն մարդկային ազգի փրկութեան համար[90]։

Հ. Վասն է՞ր Օծեալ անուանեցաւ։

Պ. Վասն կրկին պատճառաց։ Մի՝ զի մարդկութիւնն միաւորելով Աստուածութեան հետ յանձն Բանին՝ օծուեցաւ յԱստուածութենէ անտի[91]։ Եւ միւս՝ զի Նա կացուցաւ ըստ մարդկութեանն՝ Քահանայ կամ Քահանայապետ, Մարգարէ, և Թագաւոր յաւիտենական[92]. և այս եղև օծմամբն՝ որ 'ի Հոգւոյն սրբոյ[93]։

Հ. Ե՞րբ և զիա՞րդ օծեց զնա Հոգին սուրբ։

Պ. Նախ և յառաջ 'ի վայրկենի անդ յղացման Նորա յարգանդի Ս. Կուսին՝ ամենայն շնորհաց և պարգևաց հեղմամբն[94]. և ապա 'ի մկրտութեան ժամանակին՝ Նորա վերայ իջանելով մարմնաւոր տեսլեամբ իբրև աղաւնի[95]։

Հ. Մի՞թէ կատարեց Քրիստոս Քահանայի պաշտօն։

Պ. Այո՛. վասն զի զիւր անձնը պատարագ մատուցանելով՝ նախ առանց արեան՝ Ս. Հաղորդութեան խորհրդի մէջ, և ապա արեամբ՝ խաչի վերայ, վասն մեր բարեխօս և հաշտութեան միջնորդ եղև առ Հայրն Աստուած[96]։

Հ. Մարգարէի պաշտօն ի՞նչպէս կատարեց։

Պ. Յայտնապէս քարոզելով զիւր առաքչի Հօր Աստուծոյ պատուէրները, և զլինելոցը (յետոյ լինելի[97] բաները) յառաջո՛ւց պատմելով։

Հ. Թագաւորի պաշտօն ի՞նչպէս կատարեց։

Պ. Մեղաց թագաւորութեանը յաղթելով, զմահու բռնութիւնը լուծանելով, ամենայն մարդկան տիրելով մահուամբն և փառաւոր յարութեամբն, և Տէր և Աստուած ճանաչուելով յերկնաւոր և յերկրաւոր արարածոց[98]։

Հ. Քրիստոս ո՞րպէս 'ի գլուխ հանեց զՓրկչի պաշտօնը կամ զփրկագործութիւնը։

Պ. Կատարելով զՀայրական Տնօրէնութիւնքը[99]։

Հ. Ի՞նչ են Տնօրէնութիւնքն։

Պ. Տնօրէնութիւնք կամ Տնօրինականք կոչին յԱստուածաբանից և 'ի Վարդապետաց եկեղեցւոյ՝ այն ամենայն խորհուրդքն և գործքըն մարդեղութեան Որդւոյն Աստուծոյ, որք յառաջուց ևս գուշակուած էին մարգարէիւք [106]։

Հ. Նշանաւորքն 'ի Տնօրինականաց ո՞յք են։

Պ. Այսոքիկ. Յղութիւն, Ծնունդ, Մկրտութիւն, Աւետարանութիւն, (Քարոզութիւն) Հրաշագործութիւնք, Չարչարանք, Մահ, Թաղումն, Յարութիւն, Համբարձումն և Նստելն ընդ աջմէ Հօր [101]։

---

## Է. ԵԿԵՂԵՑԻ ՔՐԻՍՏՈՍԻ, ԵՒ ԽՈՐՀՈՒՐԴՔ ՆՈՐԻՆ

Հ. Զի՞նչ է Եկեղեցի Քրիստոսի։

Պ. Եկեղեցի Քրիստոսի, (եթէ համարապէս մտածուի) է ուղղահաւատ քրիստոնէից՝ թէ կենդանեաց և թէ ննջեցելոց՝ համօրէն բազմութիւնն կամ ժողովն, հանդերձ հոգևոր հովուօք կամ Առաջնորդօք [102]։

Հ. Ո՞վ է Նոցա Գլուխ կամ Հովուապետ։

Պ. «Նոցա ամենեցուն՝ իբրև միոյ մարմնոյ և իբրև միոյ հօտի, է միակ Գլուխ, է միակ Հովուապետ կամ Հօտապետ՝ նոյն ինքն Հիմնադիրն եկեղեցւոյ Յիսուս Քս [103]։

Հ. Ի քանի՞ս բաժանի Քրիստոսի եկեղեցին։

Պ. Բաժանի յերկուս, այսինքն՝ 'ի Զինուորեալ և 'ի Յաղթական։

Հ. Ո՞ր է Զինուորեալն։

Պ. Է՛ կենդանի հաւատացելոց ([illegible]) խումբն, որք դեռ այս մահկանացու վիճակիս մէջ գտանուելով, և զինուորուած գոլով հոգեկան զէնքերով (Աւետարանական օրէնօք), պատերազմ ունին ոգեկորոյս թշնամեաց (մարմնոյ՝ աշխարհէ և սատանայէ) դէմ* [104]։

Հ. Ո՞ր է Յաղթականն։

Պ. Է՛ ննջեցեալ սրբոց (հոգւոց արդարոց) ժողովն 'ի վերինն Երուսաղէմ (յերկինս), որք յետ յաղթողապէս աւարտելոյ այս աշխարհիս վերայ զնոյն հոգևոր պատերազմն, ելին 'ի

* Կոչի սա յԱստուածաբանից և Մարտիկն Եկեղեցի, և և Պատերազմօղ Եկեղեցի։

մարմնոյ՝ յուսով ընդունելոյ յԱստուծոյ զյաղթութեան փառաց պսակը * [105] ։

Հ. Աղօթարանք վասն էր Եկեղեցի անուանին (ա Կորն. ժա. 18)։

Պ. Վասն այն՝ զի քրիստոնեայք՝ նոցա մէջ եկեղեցանալով (հաւաքուելով)՝ աղօթեն, և հրապարակաւ զԱստուած պաշտեն ** [106] ։

Հ. Քրիստոսի ճշմարիտ եկեղեցւոյն յատկական նշանքն քանի՞ են։

Պ. Չորք են՝ Միութիւն, Սրբութիւն, ընդհանրականութիւն, Առաքելականութիւն [107] ։

Հ. Վասն էր կոչի Եկեղեցին Քրիստոսի՝ Մի։

Պ. Մի կամ մի միայն կոչի վասն այն՝ զի նորա անդամքն (որք են ամենայն ուղղափառ քրիստոնեայք) ներքին և հոգևոր միութեամբ հաւատոյ՝ յուսոյ և սիրոյ, իբրև մի մարմին, յօդեալ (կապուած՝ միացած) են

* Կոչի սա յԱստուածաբանից և Վերին Եկեղեցի։

** Բայց այսպիսի ժողովարանքս՝ սա 'ի զանազանիլ 'ի նախայիշատակեալ եկեղեցեաց. կոչին յԱստուածաբանից՝ նմանական Եկեղեցի, և Ս. Գրոց մէջ յիշին անուամբքս Տաճար (Ղուկ. ժը. 10), Տուն աղօթից (Մատ. իա. 13), Տուն Աստուծոյ (Ղուկ. զ. 4), Տուն Տեառն (ա. Կորն. ժա. 20)։

իւրեանց միակ Գլխոյն հետ[108], որ է Քրիստոս[109]:

Հ. Վասն է՞ր կոչի Սուրբ:

Պ. Սուրբ կոչուելոյն պատճառքն են

Նախ՝ զի Նորա Գլուխն Քրիստոս՝ սուրբ է ամենայնիւ, անմեղ և անարատ[110]:

Երկրորդ՝ զի ազատ է նա (այսինքն՝ Եկեղեցին) յամենայն արատոյ անմաքուր՝ մոլար և սուտ վարդապետութեանց[111]:

Երրորդ՝ զի ունի իւր մէջ Քրիստոսադիր՝ սրբարար և շնորհաբաշխ Խորհուրդներ[112]:

Չորրորդ՝ զի նորա անդամքն սրբեալ են յաղագս Սկզբնական մեղաց՝ Աւազանի մկրտութեամբն, և հաւատովն՝ որ 'ի Քրիստոս[113]:

Հ. Վասն է՞ր կոչի Ընդհանրական:

Պ. Ընդհանրական կամ Տիեզերական (Յունարէն՝ Կաթողիկէ) կոչուելոյն պատճառքն են՝

Նախ՝ զի ունի իւր մէջ՝ և ընդունի սիրով 'ի ծոց իւր անդամ և ժողովուրդ հաւատացեալ՝ յոր և իցէ ազգէ և յոր և իցէ աշխարհէ՝ անխտրաբար[114]:

Երկրորդ՝ զի տարածուած է և պիտի տարածուի յամենայն ծագս տիեզերաց [115], և անպակասելի մնալով՝ պիտի տևէ՝ ըստ խոստմանն Քրիստոսի՝ մինչև ցկատարած աշխարհի [116]։

Հ. Առաքելական ասուելոյ պատճառն ի՞նչ է։

Պ. Այն է՝ զի շինուած է և հաստատուն մնայ միշտ Առաքելական ճշմարիտ վարդապետութեանց հիման վերայ [117]։

---

## ԽՈՐՀՈՒՐԴՔ ԵԿԵՂԵՑԻՈՅ։

Հ. Եկեղեցւոյ Խորհուրդքն զի՞նչ են։

Պ. Են պէսպէս խորհրդաւոր սրբազան գործողութիւնք 'ի ձեռն զգալի կամ նիւթական նշանաց, որովք՝ արդարացուցիչ՝ փրկարար և կենսատու շնորհքներ պարգեւին յԱստուծոյ *՝ այն անձանց, որք օրի-

---

* Մեսաղեան կամ Մեսալեան անուանեալ հերետիկոսքն՝ որք ծագեցան 'ի կէսն չորրորդ դարու 'ի Միջագետս, ուսուցանէին՝ թէ Եկեղեցւոյ խորհուրդքն չունին բնաւ արդարացուցիչ զօրութիւն և չեն կարող սրբել զմարդոյ հոգին 'ի մեղաց։

նապէս և արժանապէս ընդունին զայնս [118] ։

Հ. Քանի՞ են այդպիսի Խորհուրդք։

Պ. Եօթն են, ոչ աւելի և ոչ պակաս *։

Ա. Մկրտութիւն։

Բ. Դրոշմ։

Գ. Ապաշխարութիւն։

Դ. Հաղորդութիւն։

Ե. Ամուսնութիւն (կամ Պսակ)։

Զ. Կարգ (կամ Ձեռնադրութիւն)։

Է. Օծումն հիւանդաց (որ ասի նաև Վերջին Օծումն)։

---

Եւ այսու պատճառաւ շատ անգամ նզովուեցան նոքա այլ և այլ մասնաւոր ժողովոց մէջ, որպէս գրեն եկեղեցական պատմիչք։

* Վալդոյք կամ Վալդոսեան աղանդաւորքն՝ որք արհամարհողք և անգոսնողք էին ամենայն եկեղեցական կարգաց և ծիսից, Տէրունեան նշանի (խաչի), Սրբոց պատկերների, և այլն, երկու խորհուրդ միայն ընդունէին, այսինքն՝ Մկրտութիւն և Հաղորդութիւն։ Երկոտասաներորդ դարումը շատ զօրացած էին նոքա յԱրևմուտս. և նոցա աղանդն մերժուած էր մասնաւոր ժողովով՝ որ եղև ՚ի Հռոմ, ՚ի 1179 թուին։ Այսպիսի խոտորնակ կարծեաց և անուղիղ վարդապետութեանց ձայնակիցք և հետևողք եղեն 16 երորդ դարումը և այլք՝ Սաքսոնացի Մարտին Լուտերի առաջնորդութեամբ, որք և մինչև ցայսօր յայտնի են ամենեցուն անուամբքս՝ Նորաղանդք, Բողոքականք կամ Լութերականք։

**Հ.** Յումմէ՞ սահմանուեցան (տրուեցան) այդ Խորհուրդքդ:

**Պ.** Ի փրկչէն մերմէ Յիսուսէ Քրիստոսէ. վա՛ զի Նա միայն՝ իբրև Հեղինակ շնորհաց և

---

Իսկ մեր Հայաստանեայց Ս. Եկեղեցին (որպէս և այլ ամենայն Առաքելահիմն եկեղեցիք) յառաջին դարուց անտի քրիստոնէութեան մինչև ցայժմս ընդունած է և ընդունի զայս եօթն Քրիստոսաստահման սրբարար խորհուրդքս, որք 'ի սրբոց Առաքելոց և յօրինաւոր յաջորդաց նոցա անընդմիջաբար աւանդուած են ընդհանուր եկեղեցւոյ, որպէս յայտնապէս ցուցանեն այն ամենայն Ծիսարանքն՝ զորս ունին ուղղադաւան ազգք քրիստոնէից յիւրաքանչիւր լեզուս: Մեր եկեղեցւոյ Ծիսարանի (Մաշտոցի) մէջ՝ որ յօրինուած է 'ի հինգերորդ դարու, գտանին առանձին առանձին կանոնք և պաշտօնաւոր աղօթքներ վասն կատարման խորհրդոցն՝ Մկրտութեան, Դրոշմի, Ամուսնութեան, Արձակելոյ զապաշխարողս, Հաղորդելոյ զհիւանդս, Աղօթելոյ 'ի վերայ նոցա, և այլն: Ձեռնադրութեան գրքի մէջ աւանդին Կանոնք վասն տալոյ զաստիճանս Կարգի: Խորհրդատետրի մէջ կան պէսպէս աղօթքներ՝ շարադրեալք 'ի նախնեաց անտի յԱստուածամերձ սրբոց վարդապետաց՝ վասն կատարման Աստուածային սուրբ Պատարագի: Յաճախապատում անուանեալ գրքի մէջ ևս՝ զոր շարագրած է մեր ամէներանեան Հայրն հաւատոյ Ս. Գրիգոր Լուսաւորիչ, որպէս նաև նորա առանձին Վարդապետութեան մէջ՝ զոր 'ի մէջ բերէ Ագաթանգեղոս ('ի Պատմ. գտանին պէսպէս Աստուածաբանական ոգեշահ խորհրդածութիւնք՝ որք վերաբերին 'ի խորհուրդս Մկրտութեան, Դրոշմի, Ապաշխարութեան և Խոստովանութեան, Հաղորդութեան, և Քահանայական Կարգի:

իբրև միակԳլուխ ընդհանուր եկեղեցւոյ[119], ունէր իշխանութիւն սահմանադիր լինելու շնորհապարգև սրբարար խորհրդոց։

Հ. Ո՞րոց միջնորդութեամբ կատարին կամ մատակարարին (տուեալ լինին)։

Պ. Եկեղեցւոյ սրբանուէր (սուրբ կարգ ունող) պաշտօնէից միջնորդութեամբ[120]. վասն զի կարգ տալու կամ ձեռնադրելու՝ իրաւունք ունի միայն եպիսկոպոսն[121], և զմիւս վեց խորհուրդքը կարող են կատարել թէ եպիսկոպոսն և թէ քահանայն[122]։

Հ. Քանի՞քն 'ի խորհրդոց հարկաւո՛ր են անշուշտ ամենայն հաւատացելոց։

Պ. Չորքն, որք են՝ Մկրտութիւն, Դրոշմ, Ապաշխարութիւն, Հաղորդութիւն. վասն զի այս խորհրդոցս շնորհածիր ներգորթեամբքն կարող է իւրաքանչիւր հաւատացեալ՝ 'ի մեղաց սրբելի, 'ի հաւատս զօրանալ, փրկութեան հասանել, և յաւիտենական կենաց կամ երանութեան արժանի լինել[123]։

Հ. Կարգն, Պսակն, և Վերջին Օծումն ո՞րոց հարկաւոր են։

Գ. Նոցա միայն՝ որք փափագ ունին կամ ըստուգապէս արժանաւոր համարեալ լինին զայս ընդունելու [124]:

Հ. Քանի՞քն 'ի խորհրդոց անկրկնելի են:

Գ. Երեքն միայն, այսինքն՝ Մկրտութիւնն *, Դրոշմն, և Կարգն [125]:

Հ. Ի՞նչ պատճառաւ չկրկնին այդ խորհուրդք:

Գ. Այն պատճառաւ՝ որ 'ի հոգիս ընդունողացն անջնջելի կնիք ** տպաւորեն [126]: Իսկ Մկրտութիւնն՝ ունի և այլ երկու առանձին պատճառք, որք են

* Դոնատեան հերետիկոսք (որոց գլուխ եղած էր Դոնատոս եպիսկոպոսն Նումիդիա քաղաքի Ափրիկոյ յամին 311) կրկին մկրտէին և կրկին ձեռնադրէին զմիանգամ մկրտեալքը և զձեռնադրեալքը՝ երբ որ ընդունէին նոքա զիւրեանց աղանդը: Մերժուեցան սոքա այն ժողովով՝ որ ըստ հրամանի Ոնորիոսի Կայսեր գումարուեցաւ Կարթագինէ քաղաքի մէջ յամին 411:

** Մէկ բառիւս իմանան Աստուածաբանք զայն հոգևոր կարողութիւնը՝ որով մարդն իրաւունք ստանայ գործելու կամ ընդունելու ինչ որ Աստուծոյ պաշտօնին վերաբերին. ուստի մկրտեալն ունի իրաւունք ընդունելու զԴրոշմը, որպէս և մկրտեալն ու դրոշմեալն՝ ընդունելու զայլ որբազան խորհուրդքը: Նոյնպէս և Կարգաւորն ունի իրաւունք կատարելու և մատակարարելու զեկեղեցւոյ խորհուրդքը:

Նախ՝ զի դեղ և ջնջիչ է Սկզբնականն մեղաց [127]՝ որ մի է։

Երկրորդ՝ զի պատկեր (օրէնակ) է մահուն Քրիստոսի [128], որ միանգամ միայն մեռաւ, և կրկին չպիտի մեռանի [129]։

---

## ՄԿՐՏՈՒԹԻՒՆ

Հ. Ե՞րբ հաստատեց Քրիստոս զՄկրտութեան Խորհուրդը։

Պ. Երբ որ ինքն մկրտուեցաւ ՚ի Յորդանան ՚ի Յովհաննէս Մկրտչէն [130]։

Հ. Ե՞րբ հրամայեց ՚ի գործ դնել զայն։

Պ. Յետ մահուանն՝ և յարութեանն ՚ի մեռելոց, երբ որ պատուիրեց Առաքելոց գնալ աշակերտել զամենայն հեթանոսքը և մկրտել զնոսա [131]։

Հ. Որո՞վ եղանակաւ պա՛րտ է զՄկրտութիւնը առնել։

Պ. Պա՛րտ է առնել ըստ հին սովորութեան ընդհանուր եկեղեցւոյ, այսինքն՝ երեք

անգամ ընկղմելով* զերեխայն աւազանի (Պէրտօ–Բէան Ջրոյ) մէջ**՝ յանուն ամենասուրբ Երրորդութեան, Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ[132]։

Հ. Երեք անգամ ընկղմելն զի՞նչ նշանակէ։

Պ. Զ Քրիստոսի երեքօրեայ մահը և թաղումը[133]։

Հ. Զայդ խորհուրդը ընդունողքն՝ զի՞նչ օգուտ ստանան։

Պ. Ազատուելով բոլորովին 'ի մեղաց ծառայութենէն, և նորածնունելով (Վէրջօքն ձնօսե-

---

* Առաջին երկոտասան դարերում մկրտութիւնն լինէր՝ առհասարակ ամենայն քրիստոնէից մէջ՝ ընկղմամբ, որպէս այժմ ևս լինի մեր՝ Յունաց՝ և այլ Արևելեան քրիստոնէից մէջ. իսկ սկսեալ յերեքտասաներորդ դարէ՝ սովորական եղև Լատինացւոց մէջ՝ հեղմամբ մկրտելն։ Յառաջին ժամանակս քրիստոնէութեան՝ կայր սովորութիւն և ոչնչմամբ մկրտելոյ։ Եւ շատք յԱստուածաբանից համարին, թէ այսու եղանակաւ մկրտուեցան մի կամ կէս օրուան մէջ 3000 մարդիկ՝ 'ի Պետրոսէ և յայլոց Առաքելոց, յԵրուսաղէմ քաղաքի (Գործ. բ. 41), ևս և բանտապետն և նորա ընտանիքն՝ 'ի Պօղոսէ, բանտի մէջ 'ի Փիլիպպուս քաղաքի Մակեդոնիոյ (Գործ. ժզ. 33)։

** Կան և այլ տեսակք մկրտութեան՝ առանց ջրոյ. որպէս Մկրտութիւն արեան. և այլն։ Տես յԸնդարձ. Հրահանգն. յէջ 301 — 303։

ըէ) հոգեպէս 'ի կեանս շնորհաց, կոչէին յորդեգրութիւն երկնաւոր Հօրն՝ ժառանգ լինելու նորա արքայութեան[134]։

---

ԴՐՈՇՄ

Հ. Դրոշմի Խորհրդոյն հաստատութիւնն ե՞րբ եղև։

Պ. Այս Խորհուրդս՝ որ նախ օրինակաւ ցուցեալ էր յիջման Հոգւոյն սրբոյ 'ի Յորդանան՝ Քրիստոսի վերայ[135], և ապա խոստացեալ էր 'ի Քրիստոսէ՝ յետ նորա յարութեանն[136], հաստատուեցաւ յօրն Պենտեկոստէի՝ երբ որ Հոգին սուրբ հրեղէն լեզուօք իջաւ Առաքելոց վերայ՝ Սիոնի վերնատան մէջ[137]։

Հ. Ի ժամանակս Առաքելոց ո՞րպիսի արարողութեամբ կատարուէր այդ Խորհուրդդ։

Պ. Միայն ձեռաց դրութեամբ և աղօթիւք. վասն զի նոքա՝ յետ մկրտելոյ զհաւատացեալքը՝ ձեռք դնէին նոցա վերայ՝ 'ի նշան դրոշմի, և աղօթէին։ Իսկ Հոգին սուրբ

եւ իջանէր յայնժամ դրոշմելոց վերայ զգալի նշանաւ, այսինքն՝ տալով ոմանց լեզուախօսութեան պարգեւ, ոմանց՝ մարգարէական ոգի, ոմանց՝ զօրութիւն բժշկելոյ՝ հրաշագործելոյ[138], եւ այլն։

Հ. Այժմ առ մեզ որպէս կատարուի՝ եւ որո՞ց ձեռամբ։

Պ. Ըստ հին աւանդութեան եկեղեցւոյ՝ կատարուի օծմամբ սրբալոյս իւղոյ (Միւռոն)՝ 'ի ձեռն քահանայից *. որք յետ մկրտելոյ զերեխայն, իսկոյն դրոշմեն զնա՝ խաչաձեւ օծելով նախ՝ զնորա ճակատը ** յա-

* Ի սկզբան անդ քրիստոնէութեան, զԴրոշմի խորհուրդը տային միայն Առաքեալք, եւ նոցա յաջորդքն, այսինքն՝ եպիսկոպոսունք (Գործ. ը. 14—16). վասն զի «Այս իսկ էր, ասէ, Ոսկեբերան, Առաքելոցն վեհագոյն առաւելութիւնն» ('ի Մեկն. Գործ. Ճառ. ժը), բայց ապա այս պաշտօնս յանձնուեցաւ յեկեղեցւոյ նաեւ քահանայից. որպէս զի եւ այն տեղերում՝ ուր չգտանին եպիսկոպոսունք, անդրոշմ չմնան հաւատացեալք։ Լատինացւոց եկեղեցին՝ սկսեալ յերեքտասաներորդ դարէ՝ սահմանած է՝ Դրոշմի խորհուրդը տալ մանկանց՝ ոչ յառաջ քան զեօթնամեայ հասակը։ Իսկ մեր եկեղեցին պահելով զհին Առաքելական սովորութիւնը, կանոնադրած է՝ տալ անմիջապէս զկնի մկրտութեան։

** Թէպէտ եւ 'ի կատարման խորհրդոյս՝ սովորութիւն է օծել

նուն ամենասուրբ Երրորդութեան, և ապա զզգայարանքը և զայլ մասունքը մարմնոյն [139]:

Հ. Ի՞նչ օգուտ ստանայ դրոշմեալն:

Պ. Ընդունելով իւր հոգւոյ մէջ զՀոգւոյն սրբոյ ներքին օծութիւնը՝ զօրանայ այնու և հաստատի 'ի հաւատս, և անդամ որոշուելով Զինուորեալ եկեղեցւոյ՝ իբրև քաջամարտիկ զինուոր սպառազինի ընդդէմ փորձութեանց, և պատրաստի՝ համարձակապէս և առանց երկիւղի խոստովանելու միշտ զՔրիստոսական սուրբ հաւատը [140]:

---

ոչ միայն զճակատը մկրտուածին, այլև զզգայարանքը, ևս և զսիրտը և զթիկնամէջքը (զթամակը), և զերկու ոտից երեսքը. բայց ըստ Աստուածաբանից՝ յատուկ տեղի Դրոշմի համարի ճակատն, ըստ բանին «Եւ տեսի՝ և ահա գառն կայր 'ի վերայ լերինն Սիոնի, և ընդ նմա հարիւր քառասուն և չորս հազարք, որ ունէին զանուն նորա, և զանուն Հօր նորա գրեալ 'ի վերայ ճակատուց նոցա» (Յայտն. ժդ. 1): Այլ տեղեաց օծմունքն՝ ըստ ասելոյ ոմանց՝ սահմանուած են յեկեղեցւոյ առ 'ի հանդիսաւորութիւն արարողութեանն: Գ. Տաթևացին ('ի գիրս Հարց. հատ. ի. պրակ. է.) համարի թէ նաև սրտի և քամակի օծմունքն են 'ի խորհուրդ Դրոշմի. և 'ի Քարոզագիրսն ('ի հատ.

## ԱՊԱՇԽԱՐՈՒԹԻՒՆ

Հ. Ապաշխարութեան խորհուրդն ե՞րբ հաստատուեցաւ։

Պ. Երբ որ Քրիստոս՝ յետ իւր յարութեանն՝ երեւելով Առաքելոց Սիոնի վերնատան մէջ, փչեց 'ի նոսա՝ և ասաց «Առէք Հոգի սուրբ. եթէ ումեք թողուցուք զմեղս, թողեալ լիցի» (Յովհ. ի. 22. 23)։

Հ. Ի՞նչ օգուտ ստանայ քրիստոնեայն՝ ապաշխարելով։

Պ. Սրբի յԱնձնական մեղաց *, և վերստին

---

Ձմռ. էջ 576) ասէ թէ «Դրոշմն է՝ զոր 'ի ճակատն և 'ի գագաթն և 'ի սիրտն դրոշմեմք»։ Իսկ այլք այլ կարծիք ունին. որոյ վերայ պիտի խօսիմք յատկապէս մեր «Ծիսապատում» անուանեալ գրքուկի մէջ։

* Անձնական (կամ ըստ այլոց՝ Ներգործական) կոչին այն մեղքերն՝ զորս գործէ մարդ՝ յետ սրբուելոյն 'ի Սկզբնական մեղաց՝ մկրտութեամբ։ Երրորդ դարու կիսուն Նովատիանոս երէցն հռովմայեցի՝ որ գլուխ եղև Նովատեան հերետիկոսաց, ուսուցանէր՝ թէ յետ մկրտութեան մահուչափ մեղօք մեղանչողաց՝ անօգուտ է ապաշխարութիւնն. և թէ՝ եկեղեցին չունի իշխանութիւն զմեղուցեալսն յետ մկրտութեան՝ ընդունել յապաշխարութիւն կամ արձակել 'ի մեղաց։ Դատապարտեցաւ սա յայլ

արժանանայ արդարութեան շնորհացը՝ զոր կորուսած էր մեղանչելովն [141]։

Հ. Ի՞նչպէս պարտ է մեղաւոր քրիստոնէին յԱպաշխարութիւն դիմել։

Պ. Կատարեալ զղջմամբ սրտի [142], խոստովանելով Աստուծոյ՝ առաջի քահանայի՝ զիւր գործած մեղքերը ըստ ամենայն հանգամանացն [143], և հաւատալով աներկբայ յուսով՝ թէ Քրիստոսի չարչարանաց և մահուան արդեանցքն արձակումն 'ի մեղաց պիտի ընդունի յԱստուծոյ՝ բանիւ քահանային [144]։

Հ. Ամենայն մեղք քաւի՞ն Ապաշխարութեամբ։

Պ. Այո՛ *. վասն զի Աստուած խոստացած է՝

---

և այլ մասնաւոր ժողովոց՝ որք գումարուեցան Հռոմի մէջ երրորդ դարումը։

* Կան մեղքեր՝ որք յատկապէս համարին ընդդէմ Հոգւոյն սրբոյ, և Անթողլի կոչին յԱստուածաբանից, հայելով յայն բանն՝ զոր ասաց Քրիստոս. «Ամենայն մեղք և հայհոյութիւնք թողցին մարդկան, բայց զՀոգւոյն հայհոյութիւն (այսինքն՝ հոյհոյելը զՀոգին, կամ հոյհոյութիւնն՝ որ զՀոգւոյն) մի՛ թողցի» (Մատթ. ժբ. 31)։ Բայց իմանալոյ համար՝ թէ ո՛յք են այն մեղքերն, և

կամի և կարէ յամենայն մեղաց սրբել ըզ-մեզ՝ երբ որ մեք մեզէն դառնամք առ նա, և հաստատուն առաջադրութեամբ այլ ևս չմեղանչելոյ՝ խոստովանիմք զմեր մեղքե-րը [145], և յանձն առնումք յօժարութեամբ սրտի կատարել զքահանայի նշանակած ա-պաշխարանքը՝ առ 'ի վճարումն [146]:

---

## ՀԱՂՈՐԴՈՒԹԻՒՆ

Հ. Ե՞րբ սահմանեց Քրիստոս զՀաղորդու-թեան խորհուրդը:

Պ. Յիւր մահուան գիշերին *, երբ որ յետին ընթրիքում անձամբ կատարելով զայն Սուրբ խորհուրդը,

---

թէ ինչ պատճառաւ Անթողլի կոչին, կարդա՛ զՅովհաննու Եր-զընկացւոյ հանճարեղ բացատրութիւնը՝ զոր պիտի մէջ բերեմք 'ի Ծանօթ. մահուչափ մեղաց: Իսկ Ոսկեբերան «Անթողլի մեղք այն է, ասէ, զոր ոչ գործիցէ՝ և պարծիցի» ('ի Մեկն. Կողոս.):

* Էր առաջին օրն էր Բաղարջակերաց՝ սկսեալ յերեկոյէ Հինգշաբաթուն ըստ Մովսիսական օրինագրութեան (Մատ. իզ. 17: Մարկ. ժդ. 12: Ղուկ. իբ. 7):

պատուէր՝ միանգամայն և իշխանութիւն՝ սուրբ Առաքելոց, որ նոքա ևս այնուհետև զնոյն ըստ այնմ օրինակի առնեն 'ի յիշատակ այն մահուան՝ որով Ինքն պիտի մեռանէր[147]։

Հ. Այդ Խորհրդոյ որո՞վք նիւթովք կատարուի առ մեզ։

Պ. Ըստ հնագոյն սովորութեան եկեղեցւոյ և ըստ աւանդելոյ մեծ Քահանայապետին մերոյ Սրբոյն Գրիգորի Լուսաւորչի՝ կատարուի անխմոր (բաղարջ) հացիւ և անապակ (անջուր) գինւով* [148]։

Հ. Ի՞նչ կայ հաւատալի՝ այդ Խորհրդոյդ մէջ։

Պ. Հաւատալին՝ այս Աստուածային անձառահրաշ Խորհրդոյս մէջ՝ այն է, զի զկնի սրբագործութեան հացին և գինւոյն, նոյն իսկ հացի տեսակին տակ՝ կայ և բաշխի

* Աւելորդ խարութիւն է՝ կարմիր գինի որոնելն Պատարագի համար. վասն զի «Արեանն Քրիստոսի նիւթ՝ գինին, ասէ Ս. Ներսէս Շնորհալի, յորոց և իցէ գունոց՝ ընդունելի՛ է, եթէ սեաւ, եթէ կարմիր, և եթէ՛ սպիտակ» ('ի Թղթ. առ Աղէքս)։

ճշմարտապէս կենդանարար մարմինն Քրիստոսի, և նոյն իսկ գինւոյ տեսակին տակ՝ կայ և բաշխի ճշմարտապէս սրբարար արիւնն Քրիստոսի [149]։

Հ. Նոքա՝ որք արժանապէս հաղորդին ամենասուրբ մարմնոյ և արեան Տեառն, որպիսի ոգեշահ և փրկաւէտ պտուղս վայելեն։

Պ. Ներելի մեղաց թողութիւն գտանեն, Քրիստոսի հետ միանան հոգւով, և գյաւիտենական կեանքը ժառանգելու արժանի լինին * [150]։

Հ. Ո՞րպիսի հոգևոր պատրաստութիւնք հարկաւոր են քրիստոնէի՝ արժանապէս ընդունելոյ համար զսուրբ Հաղորդութիւնը։

Պ. Հարկաւոր են՝ մաքրուիլ յառաջուց խոս-

* Անարժանութեամբ զայս խորհուրդս ընդունողի համար՝ այսպէս գրէ Ս. Առաքեալն Պաւղոս. «Այսուհետև որ ուտիցէ զհացս, կամ ըմպիցէ զբաժակս Տեառն անարժանութեամբ, պարտական եղիցի մարմնոյ և արեանն Տեառն։ Փորձեսցէ մարդ զանձն իւր, և ապա՛ ի հացէ անտի կերիցէ. և՛ ի բաժակէն արբցէ. զի որ ուտէ և ըմպէ անարժանութեամբ, դատաստանս (այսինքն՝ դատապարտութիւն) անձին իւրում ուտէ և ըմպէ. զի ոչ խտրէ զմարմինն Տեառն» (Ա. Կորն. ժա. 27—29)։

տովանութեամբ և ապաշխարութեամբ յամենայն ծանր կամ 'ի մահացու մեղաց, հրաժարուիլ բոլորովին 'ի մարմնական անկարգ ըղձից, և ունել եռանդուն փափագ՝ կամ բորբոքուած սէր՝ զանձնը Աստուծոյ նուիրելու, և զնորա պատուիրանքները պահելու [151]:

---

## ԱՄՈՒՍՆՈՒԹԻՒՆ

Հ. Ե՞րբ հաստատուեցաւ Ամուսնութեան Խորհուրդն:

Պ. Երբ որ բացայայտ բանիւ վճռեց Տէրն մեր Քրիստոս՝ որ ըստ Աստուածային հրամանի՝ միմեանց հետ Ամուսնութեամբ կապեալքն (այր և կին), չբաժանուին 'ի միմեանց * [152]:

Հ. Ուրեմն յառաջ քան զայն 'Խորհուրդ չէ՞ր Ամուսնութիւնն:

---

* Ոմանք յԱստուածաբանից համարին, թէ Քրիստոս 'ի խորհուրդ եկեղեցւոյ բարձրացոյց զԱմուսնութիւնը՝ գնալովն 'ի հարսանիսն՝ որ 'ի Կանա քաղաքի Գալիլեացւոց (Յովհ. Բ. 2):

Պ. Ո՛չ. այլ՝ էր լոկ դաշնակցութիւն ինչ կամ կապ անլուծանելի երկուց ամուսնակցաց մէջ՝ սահմանեալ յԱրարչէն 'ի սկզբանէ աշխարհի՝ մարդկային ազգի բազմասերուե̅ համար [153]: Բայց Քրիստոս բարձրացոյց զայն 'ի կարգ շնորհաբեր Խորհրդոց [154]:

Հ. Ինչո՞վ կատարուի առ մեզ այդ Խորհուրդդ:

Պ. Աղօթիւք և օրհնութեամբ քահանայի, որ զերկու համաձայնեալ չափահաս անձինքը (փեսայ և աղջիկ)՝ ըստ նոցա ազատ հաւանութեան՝ կապակցէ միմեանց հետ անբաժանապէս՝ 'ի նշանակ հոգևոր և մշտընջենաւոր միաւորութեան Քրիստոսի ընդ Ս. Եկեղեցւոյ [155]:

Հ. Անքակտելի՞ է ուրեմն կապն քրիստոնէական Ամուսնութեան:

Պ. Ո՛չ. վասն զի ցորչափ կենդանի են ամուսնաւորք (այր և կին)՝ կապեալ են միմեանց հետ Աստուածադիր օրինօք Պաւղի, և արգելեալ է թէ այր մարդուն և թէ կնոջն՝

յայլ ամուսնութիւն անցանել յառաջ քան զամուսնակցի մահը *[156]:

---

## ԿԱՐԳ

Հ. ԶԿարգի Խորհուրդը ե՞րբ աւանդեց Քրիստոս:

Պ. Նախ՝ յիւր մատնութեան գիշերին, երբ որ յետ սահմանելոյ վերնատան մէջ զՀաղորդութեան Խորհուրդը, քահանայագործութեան իշխանութիւն տուաւ Առաքելոց՝ ասելով «Զայս արասջիք առ իմոյ յիշատակի[157]»: Եւ ապա 'ի Համբարձման օրն, երբ որ Ձիթենեաց լերան վերայ օրհնելով զամենայն աշակերտքը[158]՝ տուաւ նոցա Քահանայապետական բարձրագոյն աստիճան կամ իշխանութիւն[159]:

Հ. Նոքա՝ ո՞րք Կարգի արժանանան, ո՞րպիսի

---

* Օրինաւոր է և երկրորդ և երրորդ ամուսնութիւնն՝ յետ մահու ամուսնակցին. իսկ աւելին քան զայն՝ ոչ: Տես յընդարձ. Հրահանգն. յէջ 325. 326:

իրաւունք կամ հոգևոր իշխանութիւն ընդունին։

Պ. Ընդունին իրաւունք՝ եկեղեցւոյ մէջ սպասաւորելու, եկեղեցական սուրբ պաշտօններ կամ սրբազան խորհուրդներ կատարելու, ժողովուրդ հովուելու, ամենեցուն՝ հոգւոյ փրկութեան ճանապարհը ուսուցանելու, և այլն [160]։

Հ. Քանի՞ աստիճան ունի Կարգն։

Պ. Եօթն [161].

Ա. Դռնապանութիւն։

Բ. Դպիրութիւն (կամ Ընթերցողութիւն)։

Գ. Երդմնեցողութիւն։

Դ. Ջահընկալութիւն։

Ե. Կիսասարկաւագութիւն։

Զ. Սարկաւագութիւն։

Է. Քահանայութիւն *։

---

* Իւրաքանչիւր աստիճանի յատկացեալ ուրոյն ուրոյն գործքերը տե՛ս Ն. Լամբրոնացւոյ «Խորհրդածութիւն 'ի կարգս եկեղեցւոյ» անուանեալ գրքի մէջ (յէջ 83—85). նա և Սրբազնակատար Մ. Գաթողիկոսի «Ուղեցոյց քրիստոնէական վար-

Հ. Եթէ աւելի քան զեօթն չեն Կարգի աստիճանքն, ուրեմն պատուո՞վ միայն զանազանի 'ի Քահանայէ՝ Եպիսկոպոսն, և յԵպիսկոպոսէ՝ Կաթողիկոսն:

Պ. Նոքա զանազանին 'ի միմեանց՝ ոչ միայն պատուոյ աստիճանաւ, այլ և Իշխանութեամբ Կարգի, և իշխանութեամբ Իրաւաբանութեան *[162]:

Հ. Ո՞րպէս:

Պ. Եպիսկոպոսն՝ իւրեան սեպհական՝ հոգեւոր պաշտօններով և իրաւաբանութեամբ՝ վերագոյն է քան զՔահանայն[163], և Կաթողիկոսն՝ իւրեան սեպհական՝ սրբազան պաշտօնների գերազանցութբ, և Նախապետական ծայրագոյն իշխանութեամբն՝ զոր ունի իւր ընդհանուր ազգին վերայ՝ 'ի

---

դասակարգութեան» անուանեալ գրքի մէջ, որ 'ի մօտ ժամանակս տպագրութեամբ 'ի լոյս պիտի ելանէ:

* Բառ իւս էրտաքենաքիան՝ Աստուածաբանք իմանան զգաւառաց իշխանութիւնը ըստ իրաւանց և օրինաց, որ Լատիներէն՝ Իւրիսդիքցիօ ասի:

հոգևորս, վեհագոյն է քան զեպիսկոպոսն, և է Գլուխ Քահանայապետական[164]:

Հ. Ո՞րպիսի արարողութեամբ տայ եպիսկոպոսն զԿարգը կամ զԿարգի աստիճանքը:

Պ. Աղօթելով, և ձեռք դնելով ընծայուած անձնի վերայ[165], ևս և մեռոնով օծելով զճակատը և զերկու ձեռքը խաչաձև՝ թէ որ ընծայուածն ընդունելու է Քահանայութեան աստիճան *[166]:

Հ. Ո՞րպիսի անձանց արժան է Կարգ տալ:

Պ. Միայն այնպիսի անձանց, որք բաւական գիտութիւն ունելով՝ կարող են զայլս ևս վարժել հոգեշահ ուսմանց մէջ, և որք վկայուած են 'ի ժողովրդականաց՝ վասն իւրեանց սրբութեան և անարատութեան՝ թէ 'ի վարս, թէ 'ի բարս և թէ 'ի հաւատս[167]:

Հ. Ո՞յք անարժան համարին Կարգի:

Պ. Տգէտ՝ անուսումն՝ մոլի՝ անպարկեշտ և

---

* Եպիսկոպոսական ձեռնադրութեան՝ սովորութիւն է ըզգագաթնը օծել:

չարագործ մարդիկ, եւս և այնպիսիք՝ որք դեռ հասակի կատարելութիւն չունին, և որք ըստ մարմնոյ եւս արատաւորք կամ պակասաւորք են[168]:

---

## ՕԾՈՒՄՆ ՀԻՒԱՆԴԱՑ

Հ. Հիւանդաց Օծման Խորհուրդն ե՞րբ աւանդեցաւ 'ի Քրիստոսէ:

Պ. Երբ որ նա զհիւանդները բժշկելոյ կարողութիւնը և իշխանութիւնը տուաւ Առաքելոց՝ ասելով «Զհիւանդս բժշկեցէք» (Մատ. Ժ. 8):

Հ. Ինչո՞ւ համար սահմանուած է այդ Խորհուրդը:

Պ. Զծանր և վտանգաւոր հիւանդները զօրացուցանելոյ համար՝ յուսով թեթևանալոյ 'ի մարմնական ցաւոց, և թողութիւն գտանելոյ՝ թեթև մեղաց[169]:

Հ. Առաքեալք ո՞րպիսի եղանակաւ սովոր էին կատարել զայդ Խորհուրդը:

Պ. Սովոր էին կատարել, երբեմն՝ միայն ձեռք

դնելով հիւանդաց վերայ՝ և աղօթելով[170], և երբեմն ևս՝ իւղով օծելով զնոսա յանուն Տեառն[171]։

Հ. Մեր Հայաստանեայց Ս. Եկեղեցին զո՞րն յայն երկու եղանակներից որոշած է այդ խորհրդոյդ կատարման համար։

Պ. Զառաջինը, որ է՝ աղօթիւք միայն, Աւետարան կարդալով, և Ս. խաչի Տեառնագրութեամբ կատարել 'ի ձեռն քահանայից *[172]։

## Ը. ՇՆՈՐՀԱԲԱՇԽՈՒԹԻՒՆ

Հ. Զի՞նչ է Շնորհաբաշխութիւն։

Պ. Է՛ դերբնական շնորհաց կամ պարգևաց

* Այլ քրիստոնեայք զայս խորհուրդս կատարեն նաև օրհնութեան իւղով, օծելով զհիւանդի աչքերը՝ ականջները՝ հոտոտելիքը՝ բերանը՝ երիկամունքը՝ ձեռքերը և ոտքերը։ Իսկ թէ ինչ պատճառաւ խափանուած է՝ կամ լաւ ևս ասել՝ չէ հաստատուած մեր ազգի մէջ իւղոյ գործադրութիւնն՝ 'ի կատարման խորհրդոյս, տե՛ս 'ի Ջանգիւսարանն Ուղղափ. Հայ. եկեղ. (յէջ 364 — 369), որ է յօրինուած Սրբազնակատար Կաթողիկոսին մերոյ Տ. Մատթէոսի, և տպուած է 'ի Կոստանդնուպօլիս յամին 1854։

բաշխումն առ անդամս Զինուորեալ եկեղեցւոյ * յԱստուծոյ ձրի բարերարութենէն՝ Քրիստոսի արդեամբքն [173]:

Հ. Գերբնական Շնորհքն կամ Պարգեւքն զի՞նչ են և 'ի քանի՞ տեսակս բաժանին:

Պ. Այն պէսպէս Աստուածադրեցին փրկաւէտ ներգործութիւնք կամ զօրութիւնք, որոց և գլխաւորագոյն տեսակքն՝ երկու են, և կոչին Հաճոյարար Շնորհք, և Ձրիական կամ Ձրիատուր Շնորհք **:

Հ. Ո՞յք են Հաճոյարար Շնորհք:

Պ. Այնոքիկ են՝ որք զմարդն արդարացուցանելով՝ առնեն Աստուածահաճոյ [174], որպիսի են այն արդարացուցիչ և սրբարար շնորհքներն՝ որք տուեալ լինին սրբազան Խորհրդոց միջնորդութեամբ՝ միայն վասն ընդունողի օգտին և փրկութեանն [175]:

---

* Այսինքն՝ առ հաւատացեալս:

** Թէպէտև երկու տեսակ շնորհքն ևս ձրիաբար տուեալ լինին, սակայն զանազանութեան համար՝ սովորութիւն եղած է առ Աստուածաբանս՝ զմինը Հաճոյարար կոչել, և զմիւսը՝ Ձրիական կամ Ձրիատուր:

Հ. Ո՞յք են Չէզոքն կամ Չէզոքք անուանեալ Շնորհքներն։

Պ. Այնոքիկ են՝ որք բաշխին յատկապէս ոչ վասն ընդունողի օգտին կամ պարծանացն, այլ՝ վասն հասարակաց շինութեան, կամ վասն տնօրինելոյ զայլոց փրկութիւնը, որպիսի են՝ ձիրքն կամ պարգևքն Իմաստութեան, Գիտութեան, Բժշկութեան, Մարգարէութեան, Սքանչելագործութեան, և այլն [176]։

## Թ. ՅԱՐՈՒԹԻՒՆ ՄԵՌԵԼՈՑ

Հ. Զի՞նչ է Յարութիւն մեռելոց։

Պ. Է՛ գործ Աստուածային կարողութեան, որով մեռելոց մարմինքն ունին յառնել (կենդանանալ) յօրն վերջին դատաստանի՝ միաւորուելով իւրեանց հոգւոց հետ * [177]։

* Զմարմնոց յարութիւնը անկարելի համարէին և չընդունէին ոչ միայն հեթանոս փիլիսոփայք՝ Եպիկուրեանք և Ստոյիկեանք (Գործ. ժէ. 18. 32), այլև աղանդաւոր հրէայքն՝ Սադուկեցիք (Մատթ. իբ. 23), եւ և Հիմենոս և Փիղետոս (Բ.

Հ. Յարուցեալ մարմինքն արդարոց զնո՞յն հանգամանքը պիտի ունենան՝ զորս ունէին 'ի մահկանացու վիճակիս։

Պ. Ո՛չ. այլ պիտի զգենուն (ստանան) նորա նորանոր Աստուածապարգև ձիրքեր կամ սքանչելի կատարելութիւնք. վասն զի պիտի լինին առաւել եւս պայծառ՝ փառաւոր՝ գեղեցիկ՝ երագաշարժ՝ նուրբ՝ թեթև՝ զօրեղ, և միանգամայն անախտ՝ անցաւակիր՝ անապական և անմահ[178]։

---

## Ժ. ՎԵՐՋԻՆ ԴԱՏԱՍՏԱՆ

Հ. Զ՞ինչ է Վերջին Դատաստանն։

Պ. Է՛ հրապարակաւ իշխանական դատողութիւնն Քրիստոսի 'ի կատարածի աշխարհիս, որ պիտի լինի երբ որ գայ նա միւ-

---

Տիմ. բ. 17. 18)՝ որք էին 'ի Հրէից հաւատացելոց, և հետևողք նոցա՝ Կերինթեանք, Մանիքեցիք, և այլք։ Նոցա մոլորութեանց դէմ խօսելով Ս. Առաքեալն Պաւղոս յառաջին թղթին առ Կորնթացիս (գլ. ժե)՝ զօրաւոր բանիւք հաստատէ զյարութեան ճշմարտութիւնը։

անգամ՝ յերկնից Աստուածային զօրու-թեամբ և փառօք, և նոյն իսկ մարմնովն՝ որով ծնաւ 'ի Կուսէ և համբարձաւ յերկ-րէ[179]։

Հ. Զո՞ր մարդիկը պիտի դատէ նա։

Պ. Պիտի դատէ զամենայն մարդիկը առ հասա-րակ, թէ զկենդանիքը և թէ զմեռածնե-րը[180], արդարապէս հատուցումն առնելով իւրաքանչիւրոց գործոցը համեմատ[181]։

Հ. Ո՞րպիսի հատուցումն պիտի լինի արդա-րոց, և ո՞րպիսի՝ մեղաւորաց։

Պ. Արդարքն պիտի հրաւիրուին 'ի Քրիստո-սէ յերկնից արքայութիւն՝ զյաւիտենա-կան կեանքը և երանութիւնը ժառանգելու հոգւով և մարմնով, և մեղաւորքն պիտի մերժուին 'ի դժոխս՝ զյաւիտենական տան-ջանքը կրելու հոգւով և մարմնով[182]։

Հ. Ո՞րպիսի բարիքներ վայելելով պիտի երջան-կանան արդարք արքայութեան մէջ։

Պ. Պիտի երջանկանան՝ յանչափս զմայլելով՝ Աստուծոյ և Աստուածայնոց դէմյանդի-ման (պայծառ) տեսութեամբ[183], կենակից

լինելով միշտ Քրիստոսի հետ, պարակցելով Աստուծոյ հոգեղէն պաշտօնէից (այսինքն՝ հրեշտակաց)[184], և այլն:

Հ. Մեղաւորաց տանջանքն դժոխոց մէջ՝ ի՞նչ պիտի լինին:

Պ. Պիտի լինին՝ զրկումն իսպառ յԱստուածային երանական տեսութենէն, խղճի տագնապ (անհանգստութիւն), անփարատելի տրտմութիւն և ցաւ, կատարեալ յուսահատութիւն, և այլն[185]:

Հ. Ե՞րբ պիտի լինի աշխարհիս կատարածն:

Պ. Այդ մեզ գիտելի չէ՛, այլ միայն Աստուծոյ: Ուստի ասաց Քրիստոս աշակերտացն «Ո՛չ է ձեզ գիտել զժամս և զժամանակս՝ զոր Հայր եդ յիւրում իշխանութեան (Գործ. Ա. 7). և Պաւղոս Առաքեալն գրեց Թեսաղոնիկեցի քրիստոնէից «Օր Տեառն * իբրև գող գիշերի այնպէս հասանէ» (Ա Թեսաղ. Ե. 2):

---

* Այսինքն Քրիստոսի երկրորդ գալստեան ժամանակն 'ի կատարածի աշխարհիս:

# ԳԼ. Ի

## ՅՈՅՍ

Հ. Յոյսն զի՞նչ է։

Պ. Է՝ այնպիսի հաճութիւն կամ յօժարութիւն հոգւոյ, որով սպասեմք ստանալ զայն ամենայն բարիքները կամ զանձառելի պարգեւքը՝ զորս խոստացած է Աստուած տալ իւր սիրելեացը 'ի հանդերձեալ (գալոց) աշխարհին * 186։

Հ. Ո՞յք են խոստացուած բարիքն կամ պարգեւքն։

Պ. Են՝ կեանք և հանգիստ անվախճան, և երանութիւն մշտնջենաւոր։

Հ. Որո՞ց միջնորդութեամբ խոստացաւ Աստուած զայնպիսի բարութիւնքը։

Պ. Խոստացաւ նախ՝ մարգարէից բերանով, և

---

* Այսինքն՝ այն անանցանելի կենաց վիճակին մէջ, որ պիտի յաջորդէ այս անցաւոր կենացս։

ապա աւելի յայտնի՝ իւր մարմնացեալ Որդւոյն՝ Յիսուսի Քրիստոսի՝ բերանով[187]:

Հ. Քրիստոս ե՞րբ հրատարակեց զխոստմունքները:

Պ. Երբ դեռ երկրի վերայ էր, մանաւանդ երբ որ վարդապետել (քարոզել) սկսաւ Երանութեանց վերայ՝ ասելով վճռաբար. «Երանի աղքատաց հոգւով, զի նոցա է արքայութիւն երկնից: Երանի սգաւորաց, զի նոքա մխիթարեսցին» և այլն (Մատ. Ե. 3. 4—11):

## ԳԼ. Գ

### ՍԷՐ

Հ. Զ՞ինչ է Սէրն Աստուծոյ։

Պ. Է՛ այնպիսի յօժարութիւն կամաց կամ ձգտումն ոգւոյ, որով սիրեմք զԱստուած վասն իւր, այսինքն՝ վասն այն՝ զի է՛ Նա ամենայնիւ կատարեալ, անսահման բարի՛, բո՛ւն բարութիւն, և մեր իսկ վերջին վախճան [188]։

Հ. Զ՞ինչ պահանջէ Աստուծոյ Սէրն 'ի մէնջ։

Պ. Պահանջէ՝ նորա կամացն հնազանդել, և զնորա օրէնքն կամ պատուիրանքներն պահել [189]՝ խորշելով 'ի չարէն, և գործելով զբարին [190]։

Հ. Քանի՞ տեսակ Աստուածային Օրէնք կան։

Պ. Երկու. յորոց մին է Բնական—Աստուածային, և միւսն Գրական—Աստուածային։

## ԲՆԱԿԱՆ — ԱՍՏՈՒԱԾԱՅԻՆ ՕՐԷՆՔ

Հ. Ո՞ր է Բնական — Աստուածային Օրէնքն ։

Պ. Է՛ միայն ճանաչողական զօրութիւնն կամ խիղճ՚ն, որ ՚ի բնէ (՚ի ծնունդէնէ) անգիր տպաւորուած է մարդոյ սրտի մէջ՝ վասն ցուցանելոյ նմա՝ թէ որ բանն բարի է՝ և որն չար, որն ուղիղ՝ և որն թիւր, որն իրաւացի՝ և որն անիրաւ, և այլն[191]։

Հ. Ամենայն մարդիկ ունի՞ն զայդ անգիր օրէնքը։

Պ. Այո՛. վասն զի ամենաբարի Արարիչն ՚ի սկզբան անդ ՚ի ստեղծման ժամանակին տուած է նոցա զայս բնական լոյսը[192]. որպէս զի այնու կարողանան նոքա իմանալ որոշաբար՝ թէ որոց (ինչ բաներէ) պիտոյ է հեռանալ, և յորոց (ինչ բաներէն) խորշիլ (հեռանալ, հրաժարուիլ)[193]։

Հ. Այլ ո՞րպիսի Օրէնքներ յառաջացան կամ կարեն յառաջանալ յայդ Օրինաց։

Պ. Ամենայն մարդկային Դրական Օրէնք, կամ Կանոնադրութիւնք, թէ՛ Եկեղեցա-

կանք՝ որք սահմանին յԵկեղեցական Իշխանութենէ, իւրաքանչիւր քրիստոնեայ ազգաց մէջ, և թէ Քաղաքականք՝ որք հաստատին 'ի Քաղաքական Իշխանութենէ, իւրաքանչիւր Տէրութեանց մէջ[194]։

Հ. Պարտակա՞ն են քրիստոնեայք և այնպիսի Օրինաց հնազանդել։

Պ. Այո՛. պարտական են հնազանդել՝ իբրև Աստուծոյ հրամանի[195]։

Հ. Վասն է՞ր։

Պ. Վասն երկուց պատճառաց։ Մի՝ զի այն օրէնքներն ևս՝ ծնունդք են Բնական Օրէնքին (խղճմտանքին)՝ զոր Աստուած ինքն է տպաւորած իւրաքանչիւր մարդոյ սրտի մէջ[196]։ Իսկ միւս՝ զի օրինադիրքն և կանոնադիրքն (օրինաւոր Հոգևոր Տեսուչք ժողովրդոց և օրինաւոր Թագաւորք կամ Իշխանք)՝ յԱստուծոյ կարգուած են, և նորա պաշտօնեայքն կամ սպասաւորքն են[197]։

## ԴՐԱԿԱՆ — ԱՍՏՈՒԱԾԱՅԻՆ ՕՐԷՆՔ

Հ. Ո՞ր է Դրական—Աստուածային Օրէնքն, և 'ի քանի՞ս բաժանի։

Պ. Է՛ բովանդակութիւնն այն ամենայն Աստուածատուր պատգամաց և հրամանաց՝ որք գրով աւանդուած են, և բաժանին 'ի Հին և 'ի Նոր [198]։

Հ. Ո՞ր է Հին Օրէնքն, և ո՞ր Նորն։

Պ. Հին Օրէնք ասին այն ամենայն Աստուածաւանդ պատուիրանքներն՝ որք հրատարակուած են Մովսիսի և այլոց մարգարէից ձեռամբ, և պարունակին Հին Կտակարանի մէջ [199]։ Իսկ Նոր Օրէնք կոչին այն ամենայն Քրիստոնէական վարդապետութիւնք և պատուիրանքներն՝ որք հրատարակուած են Սրբոց Առաքելոց միջնորդութեամբ, և պարունակին Նոր Կտակարանի մէջ [200]։

Հ. Հին Օրինաց պատուիրանքներն քանի՞ տեսակ են։

Պ. Երեք, որք են

Ա. Բարոյականք, որք բարւոյ ուղղութեան վերաբերին։

Բ. Ծիսականք, որք զկրօնի արտաքին պաշտամունքը ցուցանեն (այսինքն՝ Ծէսերը)։

Գ. Դատաստանականք, որք դատաստանական գործոց վերաբերին, և զյանցաւորաց պատիժքը որոշեն։

Հ. Հարկ է քրիստոնէից զՀին Օրէնքը պահել։

Պ. Զծիսական և զԴատաստանական Օրէնքները հարկ չէ՛ պահել[201], այլ միայն զԲարոյականքը՝ որք պարունակուած են Տասնաբանեայ պատուիրանաց մէջ։

Հ. Ապա է՞ր քրիստոնեայք պարտական չեն պահելու զԾիսական և զԴատաստանական Օրէնքները։

Պ. Ապա այն՝ զի Ծիսականքն լոկ օրինակք կամ ստուերք գոլով Քրիստոսադիր Խորհրդոց[202], յետ Քրիստոսի խաչելութեան և մահուան դադարեցան (խափանուեցան)[203]։ Նոյնպէս և Դատաստանականքն անպէտ

եղէն և ընջուեցան, որովհետև Քրիստոս՝ փոխանակ ժամանակաւոր վարձուց և պատժոց՝ յաւիտենական վարձ և պատիժ սահմանեց [204]:

**Հ.** Բարոյական Օրինաց պահպանութիւնն վասն էր հարկաւոր է և քրիստոնէից:

**Պ.** Վասն այն՝ զի Բարոյական Օրէնքն ոչ միայն չխափանուեցաւ 'ի Քրիստոսէ, այլ և կատարելագոյն բացայայտութեանց յաւելուածներով վերստին հաստատուեցաւ [205]:

**Հ.** Ո՞յք են Տասնաբանեայ պատուիրանքն Աստուծոյ:

**Պ.** Այսոքիկ են

Ա. Մի՛ եղիցին քեզ այլ աստուածք՝ բաց յինէն:

Բ. Մի՛ արասցես կուռս:

Գ. Մի՛ առնուցուս զանուն Աստուծոյ քո 'ի վերայ սնոտեաց:

Դ. Յիշեա՛ սրբել զօր շաբաթու *:

---

* Շաբաթապահութիւնն՝ ըստ աւանդելոյ Մեկնչաց՝ ընկալուած էր յԱդամայ ժամանակէն, և սովորութեամբ կայր

Ե. Պատուեա զհայր քո և զմայր:
Զ. Մի՛ սպանաներ:
Է. Մի՛ շնար:
Ը. Մի՛ գողանար:
Թ. Մի՛ սուտ վկայեր:
Ժ. Մի՛ ցանկանար տան ընկերի քոյ, մի՛ անդոյ նորա, մի՛ կնոջ նորա, մի՛ ծառայի նորա, մի՛ աղախնոյ նորա,

---

միշտ հրէից մէջ, բայց այս պատուիրանաւս՝ որոշագոյն ևս սահմանեցաւ 'ի ժամանակս Մովսիսի:

Առ քրիստոնեայս՝ 'ի սկզբանէ անտի օրէն եղև Շաբաթ 'ի տեղ պահել զՄիաշաբաթ: Եւ այս՝ այնու պատճառաւ, զի (որպէս յայտնի է յանփոփոխ և 'ի մշտնջենաւոր աւանդութենէ) յետ համբարձմանն Քրիստոսի, սահմանադրութեամբ Առաքելոց՝ շաբաթանալոյ (հանգստանալոյ) օր նշանակեցաւ Միաշաբաթն, յատկապէս 'ի պատիւ յարութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. որոյ վասն և օրն այն՝ Յունական ձայնիւ կոչեցաւ Գիւրիակէ (ըստ մեզ՝ Կիւրակէ), որ նշանակէ Տէրունի, Տէրունական: (Տես 'ի Յայտն. ա. 10: Իգնատ. 'ի թղթ. առ Մագն.):

Յետ Քրիստոսի, յառաջին դարու, երևեցան քրիստոնէից մէջ այնպիսի աղանդաւորք՝ որք ասէին, թէ պարտ է Կիւրակէի տեղ զՇաբաթ օրը սուրբ պահել ըստ հրէական օրինաց. որոյ վասն կոչեցան նոքա Շաբաթական կամ Շաբաթապահք, և յԱռաքելոց՝ ժողովով մերժեցան 'ի 51 թուին: (Տես 'ի գործ. գլ. ԺԵ):

և մի՛ ամենայնի՝ զինչ ընկերի քո իցէ (Ել. Ի. 3—17։ Բ Օրին. Ե. 7—21)։

Հ. Նոր Օրինաց պատուիրանքներն ունի՞ն աւելի կատարելութիւնք քան զՀին Օրինաց պատուիրանքները։

Պ. Այո. վասն զի ոչ միայն խորշեցուցանեն (արգելեն) զմեզ յամենայն տեսակ մեղաց կամ ՚ի մոլութեանց, այլ և հրամայեն զերազանցագոյն Աստուածահաճոյ առաքինութիւնք գործել, և այլն[206]։

Հ. Մեղաց տեսակքն քանի՞ են։

Պ. Երկու, Սկզբնական, և Ներգործական։

Հ. Ո՞ր է Սկզբնական մեղքն։

Պ. Է՛ Նախամարդոյն Ադամայ այն առաջին՝ անձնական և միանգամայն հաղորդական *

---

* Անձնական և հաղորդական ասի մեղքն Ադամայ վասն այն՝ զի Ադամ սկզբնահայր գոլով մարդկութեանս, մեղանչելովն ընդդէմ պատուէրանին Աստուծոյ՝ կորոյս իրաւամբք ոչ միայն զիւր սկզբնական արդարութիւնը, այլ և զայն ամենայն գերբնական պարգևքը և զանախտութեան ձիրքերը՝ զորս ըստ խոստմանն Աստուծոյ պիտի ժառանգէին նորա սերունդքն՝ եթէ մնայր

մեղքն՝ որով մահուչափ մեղանչեց նա ընդ-
դէմ իւր ամենակարող Արարչին [207]։

Հ. Ի՞նչ էր Ադամայ մեղքն։

Պ. Անհնազանդութիւն պատուիրանին Աս-
տուծոյ [208]. վասն զի իւր ազատ կամօքն յօ-
ժարեցաւ ուտել իւր կնոջ Եւայի հետ
յայն ծառոյ պտղէն՝ զոր Աստուած արգե-
լած էր [209]։

Հ. Այդ մեղաց հետեւանքն կամ պատիժն ի՞նչ
եղեւ։

Պ. Եղեւ դատապարտութիւնն մեր Նախա-

---

նաւ յանմեղութեան, որպէս գրեն ամենայն ուղղափառ Աստուածաբանք՝ հայելով 'ի բանս Աստուածաշունչ գրոց։

Ի սկզբան հինգերորդ դարու Պեղագիոս անուն աղանդապետ ոմն Անգղիացի, և այս նորա աշակերտքն, Յուլիանոս (Պեղագեան) և Կեղեստիոս, հակառակեցան այս միաձայն վարդապետութեան ընդհանուր եկեղեցւոյ՝ ասելով, թէ Ադամ մեղանչելովն՝ իւր անձին միայն վնասեց՝ և ոչ թէ իւր զաւակացն կամ բովանդակ մարդկային ազգի. թէ՝ մարդիկ առանց մեղաց ծնանին. թէ՝ նորածին մանկանց հարկաւոր չէ մկրտիլ 'ի մեղաց սրբելոյ համար, և այլն։ Յայս այսպիսի մոլորութիւնքն հերքուեցան յամենայն ուղղափառ վարդապետաց՝ նախ մասնաւոր ժողովոց մէջ՝ որք գումարուեցան յԵրուսաղէմ, 'ի Կարթագինէ, 'ի Հռոմ, և յայլ տեղիս, և ապա Եփեսոսի՝ երրորդ տիեզերական ժողովոյն մէջ, յամի Տեառն 431։

ծնողաց (Եղիամայ և Աննայի) թէ ըստ հոգւոյ և թէ ըստ մարմնոյ, թէ այս կենաց և թէ հանդերձեալ կենաց վիճակի մէջ[210], որ և տարածուեցաւ իրաւամբք՝ նորա ամենայն զաւակաց վերայ՝ իբրև հայրենի ժառանգութիւն[211]:

Հ: Ուրեմն ամենայն մարդիկ ընդ սկզբնական մեղօք ծնան և ծնանին:

Պ. Այո՛ *[212], որպէս վկայէ և մարգարէն Դաւ-

---

* Ցայս ընդհանուր կարգէ մարդկային ծննդոց 'ի բաց առնուլ պարտ է բոլորովին զԱստուածամայր Կոյսն Մարիամ, որ առանձին իմն Աստուածային շնորհիւ ազատ պահուելով 'ի մեղաց անտի նախահօրն՝ էր սուրբ և մաքուր ամենայնիւ յառաջին վայրկենէ անտի յղութեանն. ուստի անարատ քարոզի և տօնախմբի յընդհանուր եկեղեցւոյ՝ ո՛չ միայն նորա ծնունդն, այլ և յղութիւնն:

Զայս ճշմարտութիւնս՝ որ աւետարանեալ էր և Գաբրիէլ հրեշտակապետի բանիւն առ Ս. Կոյսն «Մի՛ երկնչիր՝ Մարիամ, զի գտեր շնորհս յԱստուծոյ» (Ղուկ. ա. 30), բարեվայելչապէս հռչակէ և մեր Հայաստանեայց Ս. եկեղեցին՝ հոգենուագ երգովքս. «Բանաւոր երկիր՝ Տիրուհի, անդաստան՝ մաքուր 'ի փշոց մեղաց: — Անթառամ ծաղիկ՝ անդաստանապարտ շառաւիղ՝ վերաբերեալ յարմատոյն Յեսսեայ» ('ի Շարակ.): Եւ հոգեկիր հռետորն մեր՝ Ս. Գրիգոր Նարեկացի 'ի նոյն միտս ասէ. «Մեղուցելոյ կնոջն առաջնոյ առանց յանցանաց զաւակ գովե-

ւթի՝ ասելովն «Անօրէնութեամբ յղացաւ, և 'ի մեղս ծնաւ զիս մայր իմ» (Սաղմ. ծ. 7):

Հ. Ինչո՞վ կարեմք մեք սրբուիլ 'ի Սկզբնական մեղաց:

Պ. Սուրբ աւազանի մկրտութեամբն[213], ըստ

---

ցար: — Երանեա՛լ ես դու 'ի լեզուս անբիծս ընտրական շըրթանց, ծաղի՛կդ Յեսսեայ պտղովն մեր կենաց, որ 'ի գրութենէ խառնութեան քառից յեղանակեալ տարերաց՝ անկցորդ մնացեր 'ի մասնէ հողածնելոցս հասարակաց, ո՛չ բերող ծանրութեան բնակակիր համասատեղծս կարեաց» ('ի Ներս. Կլայեն):

Ընդունուած է նոյնպէս յընդհանուր եկեղեցւոյ և յամենայն ուղղամիտ Աստուածաբանից, թէ ըստ իմիք այնպիսի առանձին շնորհ վայելեց և կարապետն և մկրտիչն Քրիստոսի Յովհաննէս՝ սրբուելով 'ի սկզբնական մեղաց յառաջ քան զծնանիլն՝ մօր արգանդին մէջ, երբ որ Տիրամայր Կոյսն (որոյ արգանդումն էր Սրբիչն մեղաց՝ Բանն մարմնացեալ) ողջոյն տուաւ Եղիսաբէթի: (Ղուկ. ա. 40 — 44): Այս ևս ծանուցուած էր նոյն հրեշտակապետի բանիւն՝ որ առ հայրն նորա Զաքարիա. «Հոգւով սրբով լցցի անդստին յորովայնէ մօր իւրոյ» (Ղուկ. ա. 15):

Երեմիա մարգարէի համար ևս հաւանին ոմանք ասել, թէ նոյնպիսի առանձին շնորհի արժանացած էր (Տես առ Կիւրղի Եր. 'ի Կոչ. ընծ. գլ. գ): Եւ զայս ասեն՝ հայելով նոյն իսկ մարգարէի գրածին. «Եղև բան Տեառն առ իս՝ և ասէ. Մինչչև ըստեղծեալ էիր յորովայնի, գիտեմ զքեզ. և մինչչև ելեալ էիր յարգանդէ, սրբեցի զքեզ» (Երեմ. ա. 4. 5):

որում և Քրիստոս Տէրն մեր ասաց. «Որ հաւատայ և մկրտիցի՝ կեցցէ» (Մարկ. ժզ. 16)։

Հ. Ո՞ր է Ներգործական մեղքն, և 'ի քանիս բաժանի։

Պ. Ներգործական մեղք ասին մեր ամենայն անձնական մեղքերն՝ զորս գործեմք մեր կենաց ընթացքի մէջ 'ի չափահաս հասակի, և բաժանի յերկուս, այսինքն՝ 'ի Մահուչափ, և 'ի Ներելի։

Հ. Ո՞յք են Մահուչափքն, և ո՞յք Ներելիքն։

Պ. Մահուչափ կոչին այն ամենայն ծանր ծանր մեղքերն՝ որք կատարեալ հաւանութեամբ կամաց գործին և արհամարհանօք Աստուածային պատուիրանաց* . և Ներելի կոչին

* Թէպէտև ամենայն մեղք ընդդէմ են Աստուծոյ (այսինքն՝ Եռանձնեայ Աստուածութեան), բայց ըստ առանձին նկատմանն Աստուածաբանից՝ տկարութեամբ գործեալ մեղքերն՝ համարին ընդդէմ Հօր Աստուծոյ ամենակալի. անգիտութեամբ գործեալքն՝ ընդդէմ Որդւոյ, որ է Իմաստութիւն Հօր. և գործեալքն կամաւ՝ նենգութեամբ կամ չարութեամբ սրտի և արհամարհանօք պատուիրանացն Աստուծոյ՝ ընդդէմ Հոգւոյն սրբոյ, որ է Աղբիւր բարութեան և թողութեան։ Եւ այս վերջինքս յատկապէս Անթողլի կոչին, և են հետևեալքս.

այն ամենայն թեթեւ և ոչ շատ վնասակար մեղքերն՝ որք կամ անգիտութեամբ գործին, կամ տկարութեամբ, և կամ ակամայաբար [214]:

Հ. Գլխաւորքն 'ի մեղաց՝ ո՞ք են:

Պ. Եօթքն են՝ որք կարող են ծնող և աղբիւր լինել այլ ևս բազմատեսակ մեղաց:

---

Ա. Յուսահատութիւն, այսինքն՝ բոլորովին անյոյս լինել 'ի գտանելոյ յԱստուծոյ զթողութիւն. մեղաց և զփրկութիւն հոգւոյ:

Բ. Յանդգնաբար յուսալ յողորմութիւնն Աստուծոյ՝ առանց մտածելոյ զնորա արդարութիւնը:

Գ. Հակառակել ընդդէմ ծանուցեալ ճշմարտութեան:

Դ. Չարաչար նախանձ ընդ բարիս եղբօր:

Ե. Անկարեկից խստասրտութիւն:

Զ. Անզեղջ յամառումն 'ի մեղս:

Յովհաննէս Երզնկացին՝ որ մեր Տէկնիէ վարդապետաց մինն է, ընդարձակ խօսի այս յիշատակուած մեղքերի վերայ՝ գրելով այսպէս. «Թէպէտ ամենայն մեղք ընդդէմ Աստուծոյ է՝ որ երիս է և մի, սակայն յատկապէս առ ոմն (ընդդէմ) Հօր, ոմն՝ Որդւոյ, և ոմն՝ Հոգւոյն սրբոյ. քանզի 'ի Հայր ոք մեղանչէ տկարութեամբ, և յՈրդի՝ տգիտութեամբ, վասն զի Հայր իշխանութիւն է, և Որդի՝ իմաստութիւն: Արդ՝ ընդդէմ իշխանութեանն՝ տկարութեամբ, և ընդդէմ իմաստութեանն՝ տգիտութեամբ ոք մեղանչէ. և թէպէտ մեղք է, բայց թողութիւն ունի. զի պատճառ՝ ոմն տկարութիւնն ունի, և ոմն տգիտու-

Հ. Քանի՞ են այնպիսի մեղքերն։
Պ. Չորս՝

Ա. Հպարտութիւն։
Բ. Նախանձ։
Գ. Բարկութիւն։
Դ. Ծուլութիւն։

---

թիւնն։ Իսկ 'ի Հոգին սուրբ մեղանչէ որ նենգութեամբ՝ յորժամ կարէ և գիտէ հակառակել չարեաց, բայց նենգութեամբ միայն զայն ընտրեաց..։ Անթողլի ասաց զայսպիսիս Քրիստոս. զի ոչ երբէք ընթեռնումք 'ի գրոց՝ եթէ թողեալ իցէ, որպէս Մելքիսեդեկ Անհայր և Անմայր ասի. ոչ եթէ ոչ ունէր (հայր և մայր), այլ զի ոչ գրեցաւ։ Դարձեալ՝ զի հակառակի աղբեր թողութեանն, որ է Հոգին սուրբ։ Դարձեալ՝ վասն անկարութեան մարդոյ, զի հազիւ կարէ ոք պատրաստիլ առ 'ի յընդունել զշնորհս՝ վասն ծանրութեան մեղացն, որ է ընդդէմ Հոգւոյն սրբոյ։ Դարձեալ՝ Անթողլի ասելն՝ երկակի է. երբեմն՝ թէ Ո՛չ թողեալ լինի. որպէս մեղք հրեշտակաց և կորուսելոց մարդկան անթողլի. և երբեմն ըստ այնմ է անթողլի՝ զի ոչ ունի պատեհութիւն յինքեան թողուլ, թէպէտ ըստ Աստուծոյ պատեհութեանն՝ ամենայն մեղք է թողլի։ Բայց ամենայն մեղք մահու չափ՝ անթողլի է, զի հակառակին շնորհացն՝ որ թողուն զմեղս։ Եւ այս լինի ըստ վեց եղանակի, որք են տեսակք մեղաց 'ի Հոգին սուրբ. առաջին՝ անյուսութիւն. երկրորդ՝ յանդգնութիւն. երրորդ՝ ճանաչել զճշմարտութիւն՝ և հակառակել. չոր-

Ե. Եզահութիւն:
Զ. Ոսկրամոլութիւն:
Է. Ողջախոհութիւն:

Հ. Կարէ՞ մարդ ազատ մնալ բոլորովին յամենայն Ներգործական մեղաց:
Պ. Ո՛չ[215]. բայց կարէ զգուշանալ 'ի կամաւո-

---

րորդ՝ նախանձ եղբայրական սիրոյ. հինգերորդ՝ խոստովանութիւն. վեցերորդ՝ անապաշաւ մեռանել»:

«Գոյ 'ի տեղիս (յայս) տարակուսանս, եթէ զիա՞րդ ոչ թողցէ զմեղս՝ յորժամ ապաշխարիցէ ոք. և այն զի ասաց՝ Ո՛չ կամիմ զմահ մեղաւորին, այլ զդարձն. մանաւանդ թէ նոքա՝ որ զայն բան ասացին (այսինքն՝ հօյհոյիչքն Հոգւոյն), բազումք 'ի նոցանէ ապաշխարեցին հաւատովք՝ և արդարացան: Արդ՝ կամ թէ ոչ թողու դատաւորն՝ զի ցուցցէ եթէ որչափ ծանր է յանցանքս այս. և թէ թողուցու՝ յայտ արասցէ թէ որչափ է բարերարութիւն նորա: Եւ դարձեալ՝ (ոչ) եթէ ոչ թողու եթէ ապաշխարեսցեն. այլ զի որ զդեն հայհոյութեան զպենու, յափշտակեալ է զմիտս նորա, և ոչ տայ թոյլ դառնալ յապաշխարութիւն. վասն որոյ կանխատես զօրութեամբն իմացեալ զանդարձութիւն նոցա՝ ասաց զայս..: Դարձեալ՝ որ զՀոգւին սուրբ հայհոյէ՝ մի թողցի նմա, մի յայսմ աշխարհի և մի 'ի հանդերձելումն: Հայհոյօղ սուրբ Հոգւոյն նոքա են՝ որ անզեղջ մեռանին մեղօք՝ ոչինչ համարելով զՀոգւոյն վարդապետութիւն, որ խրատէ դառնալ 'ի մեղաց: Արդ՝ այսպիսիքս յորժամ մեռանին՝ թողութիւն ոչ ունին յայսմ աշխարհի. զի ոչ խոստովանեցան» և այլն ('ի Մեկն. Մատթ. գլ. ժբ):

րապէս մեղանչելոյ։ Նա և այս լինի՝ ոչ թէ միայն մարդոյն յօժարական ջանիւքն, այլ և օգնականութեամբ Աստուծոյ շնորհացն [216]. զոր պարտ է աղօթիւք * խնդրել [217]։

Հ. Ի քանի՞ս բաժանի Աղօթքն։

Պ. Յերկուս, այսինքն՝ 'ի Հրապարականն, և յԱռանձնականն։

Հ. Ո՞ր է Հրապարականն, և ո՞ր Առանձնականն։

Պ. Հրապարականն աղօթքն այն է՝ զոր հրապարակաւ (յայտնապէս) այլ աղօթաւորաց հետ 'ի միասին առնեմք եկեղեցւոյ մէջ, սահմանադրուած ժամանակներում ** [218]։

---

* Զքանի մի մասնաւոր գիտելիքները աղօթից վերայ՝ տես Ընդարձակ Հրահանգի մէջ. յէջ 88 — 91։

** Ս. Եկեղեցին հայելով՚ի բան մարգարէին Դաւթի «Եօթն անգամ յաւուր օրհնեցից զքեզ (Սաղմ. ճժը. 164), սահմանած է 'ի սկզբանէ անտի եօթն կանոնական ժամերգութիւնք յիւրաքանչիւր աւուր, որք են՝ Գիշերայինն, Առաւօտեանն, Երրորդ ժամուն, Վեցերորդ ժամուն, Իններորդ ժամուն, Երեկոյեանն, Հանգստեանն։ Սոցա վերայ յաւելացան ապա և այլ երկուք, այն է՝ Արևագալին և Խաղաղականին։ Եւ այս՝ այնու խորհրդով, որ 'ի դէմս իւրաքանչիւր անձանց ամենասուրբ Եր-

Իսկ Ըստանձնականն այն է՝ զոր առանձնաբար (ծածուկ) կատարեմք մեր սենեկաց մէջ, կամ այլ պատշաճաւոր տեղերում երբ և իցէ[219]։

Հ. Աղօթից գլխաւորն ո՞րն է։

Պ. Է՛ Տէրունական աղօթքն «Հայր մեր», որ թէև համառօտ է, բայց բովանդակէ իւր մէջ զամենայն կարևոր խնդրուածքը մարդոյ համար։

Հ. Քանի՞ խնդրուածք կան այն աղօթքի մէջ։

---

բոլորութեան՝ կատարուին երեք երեք ժամերգութիւնք ըստ այսմ կարգի

| | |
|---|---|
| Գիշերայինն<br>Վեցերորդ ժամուն<br>Հանգստեանն | 'ի դէմս Հօր Աստուծոյ։ |
| Առաւօտեանն<br>Իններորդ ժամուն<br>Երեկոյեանն | 'ի դէմս Որդւոյն Աստուծոյ։ |
| Արևագալին<br>Երրորդ ժամուն<br>Խաղաղականին | 'ի դէմս Հոգւոյն սրբոյ։ |

(Տես 'ի Ժամագիրս)։

Գ. Եօթն. վասն զի խնդրեմք այնու յերկնաւոր Հօրէն յԱստուծոյ՝

Ա. Որ արժանացուցանէ զմեզ՝ սուրբ առնել (փառաւորել) զնորա ամենասուրբ անունը՝ ուղղիաբար ծառայելով նմա։

Բ. Որ նա ինքն մեր սրտի մէջ թագաւորէ շնորհօք, որպէս զի չծառայեմք մեղաց։

Գ. Որ զօրացուցանէ զմեզ՝ հնազանդութեամբ կատարել զնորա կամքը երկրիս վերայ, այնպէս՝ որպէս հրեշտակքն կատարեն յերկինս։

Դ. Որ տայ մեզ զմեր հանապազորդ (ամէն օրուան) հացը, այսինքն՝ ինչ որ հարկաւոր է մեր ժամանակաւոր կենաց պիտոյքի համար։

Ե. Որ զմեր պարտիքը (յանցանքը) թողու, որպէս և մեք մեր պարտապանաց, (Նոցա՝ որք յանցաւորք են առ մեզ) թողումք։

Զ. Որ թոյլ չտայ մեզ փորձութեանց մէջ անկանիլ։

Է. Որ պահէ զմեզ ՚ի չարէն, այսինքն՝ յորպիսի և իցէ՝ ՚ի չար գործոց, ՚ի չար խորհրդոց, և այլն *։



---

* Զայս աղօթքս ճոխ իմաստիւք մեկնած են ընդարձակօրէն հոգեհանճար վարդապետքն մեր՝ Եղիշէ, և Ն. Լամբրոնացի-բայց զհամառօտ և դիւրիմաց բացատրութիւնը, կարող են աշակերտք և ամենայն ընթերցասէրք տեսանել «Ուղեցոյց քրիստոնէական հաւատոյ» անուանեալ գրքի մէջ. զոր յառաջ ևս յիշատակած եմք։



«Եւ մեք այսուհետև շնորհօք Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի զհետ գնասցուք վարդապետութեան Աստուածային Գրոց, անմոլորապէս 'ի Նոսա հայելով, և տեսանելով զիմաստն՝ որ 'ի Նոսա ։ Եւ նախ առաջին զանձինս կրթելով 'ի Հրահանգս Նոցա ոգեշահս, և ապա այլոցն ուսուցանելով»։

Ս. ՇՆՈՐՀԱԼԻ

('ի Մեկն. Ընդհ. կաթող. յառաջաբն)։





«Ո՛չ եթէ որպէս մարդկան հաճոյ թուէր՝ եղաւ հաւատոցս հաստատութիւն, այլ յամենայն գրոց ազգոյ ազգոյ բան ժողովեալ՝ 'ի մի վարդապետութիւն հաստատութեան կատարին»։

(Կիւրեղ Երուս. 'ի Կոչ. Ընծ. Ճե. Ե)։

«Պահեսցո՛ւք զքարոզ աւանդն՝ զոր 'ի Հարանցն առաք, երկիրպագանելով Հօր և Որդւոյ և Սուրբ Հոգւոյն, Որդւով՝ զՀայր, և Հոգւով՝ զՈրդի ծանուցեալ. յորս մկրտեցաքն, յորս հաւատացաքն, առ որս եկաքն»։

(Գրիգոր Աստուածաբ. յԱռ. որս, ճառ ԽԲ)։





# ՎԿԱՅՈՒԹԻՒՆՔ

## ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ ԳՐՈՑ *

## ԵՒ Ի ՍՐԲՈՑ ՎԱՐԴԱՊԵՏԱՑ

### Ի ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆ

### ՆԱԽԱԿԱՐԳԵԼՈՑՆ ԲԱՆԻՑ

### 1

**Մատթ. իզ. 8. 10. Յովհ. ժզ. 13։ Ա. կորն. գ. 11։**

— *Կատարեաց (Քրիստոս) զարդարութիւնս ամենայն 'ի փառս և 'ի պարծանս մարդկութեանս մերում, և եղև Վարդապետ ամենայն արարածոց (Գ. Լուսաւորիչ 'ի Յաճախապատում. ճառ. ժզ)։*

— *Ամենայն հաւատոց մերոց հիմն հաստատուն և ճշմարիտ՝ է ինքն Տէրն մեր Յիսուս Քրիստոս. և 'ի վերայ այսր վիմի հաստատեալ են հաւատք, և 'ի վե-*

Ձ

* Աստուածաշունչ Գրոց վկայութեանց տեղերը միայն նշանակել ըստ գլխոց և համարոց՝ բաւական համարեցաք, ըստ որում ամենայն բարեկարգ վարժատանց մէջ և ամենայն ընթերցասէր մարդոց մօտ գտանի այժմ նոյն Ս. Գիրքն։

բայ հաւատոյն՝ շինուածն մինչև 'ի կատարած իւր։ Բայց հիմն նա ինքն է 'ի սկզբանէ շինուածոյ ամենայնի (Յակոբ Մծբն. ճառ ա. վասն հաւատոյ)։

**2**

**Մատթ. դ. 23։ Գործ. ա. 1։**

— (Քրիստոս) լուսաւոր վարդապետութեամբ ըստուգեաց ճշմարիտ հաւատս յամենասուրբ Երրորդութիւնն (Գ. Լուս. 'ի Յաճախ. ճառ ժգ)։

— Նախանկար օրինակս ունին հովիւքն հոգևորք զհովիւն քաջ՝ որ եդ զանձն իւր 'ի վերայ ոչխարացն, որ բանիւք ասաց և ուսոյց; և արդեամբք կատարեաց (Ս. Շնորհ. 'ի Մեկն. Ա. Պետ. ճառ զ. 'ի Յորդոր.)։

— Գիտեմք՝ եթէ Որդին Աստուծոյ եկն, և ետ մեզ միտս, զի ծանիցուք զճշմարիտն։ Մեր զԱստուածխօսութիւն Որդւոյն ասէ՝ որով ուսոյց զնոսա, և որով իմաստնացան (նոքա) և նորոգ միտս ստացան... և այնու ծանեան զճշմարիտն Հայր և զճշմարիտ Հոգին (Նոյն. 'ի Մեկն. Ա. Յովհ. ճառ թ)։

— Եկաց ընդ նոսա զաւուրս քառասուն, և ուսոյց զարքայութեանն Աստուծոյ անճառ գիտութիւնն (Ն. Լամբ. 'ի ճառն Համբարձ.)։

**3**

**Մատթ. իը. 19. 20։ Մարկ. ժզ. 15։**

— Ընթացան (Առաքեալքն) ընդ տիեզերս ամենայն

*մինչև 'ի ծագս երկրի լի՛ առնել զքարոզութիւն բանին կենաց* (Գ. Լուս. յԱգաթանգ.)։

— *Որ կոչեցեր զտիեզերս 'ի հաւատս ճշմարիտս ընտրելովք քո Առաքելովք* ('ի Շարակ.)։

— *Հանեցար* (Տէր) *մարմնանալ վասն մեր, և ուսուցեր մեզ սրբովք Առաքելովք հաւատս անբիծս՝ որ 'ի սուրբ Երրորդութիւնն* ('ի Մեծ Մաշտոցն)։

4

Ա. Թեսաղ. ա̃. 13։ Յուդ. 'ի կաթող. 3։ Բ. Թեսաղ. ա̃. 14։

5

Ա. կորն. ժգ. 13։

— *Արարածք* (*մարդիկ*) *ճշմարիտ սիրովն մերձենան առ Աստուած՝ հաւատով և յուսով և պատուիրանապահութեամբ... (Ապա և մեք) յամենայնի զոհանալով զբարերարութեանն Նորա խնամոց, խոստովանողք և դաւանողք ճշմարտութեանն լիցուք* (Գ. Լուս. 'ի Յաճախ. ճառ ա̄)։

— *Ամենայն գործք առաքինութեան 'ի հաւատոց և 'ի յուսոյ և 'ի սիրոյ բղխեն։ Զի թէ զհաւատ և զյոյս և զսէր արժանացուք ստանալ, դիւրաւ զամենայն առաքինութիւնս ուղղեսցեմք և կամարարք Աստուծոյ լինիցիմք* (Խոսրով 'ի Մեկն. Ժամակարգ.)։

6

Հռովմ. ժ. 8—11։

7

— Հաւատոյն անուն մի է, բայց կրկին ունի զօրութիւն։ Առաջին՝ դաւանութեան հաւատն, որ է խոստովանութիւն 'ի սուրբ Երրորդութիւնն, զոր ընկալաւ իւրաքանչիւր ոք յաւազանէն։ Երկրորդ՝ հաւատայն է, որ զբանս՝ զոր Հոգին սուրբ խօսեցեալ է բերանով Մարգարէիցն և Առաքելոցն և եկեղեցւոյ Վարդապետօք՝ զոր 'ի գիրս սուրբս՛ գրեցին, չհամարի առասպելս և սուտ. այլ հաւատայ՝ թէ ճշմարիտ են և ուղիղ այնպէս՝ որպէս թէ աչօք իւրովք տեսանէ զամենայն, զեղեալսն, և զլինելոցն, և զոր ենն (Ն. Շնորհ. 'ի Թղթ. Ընդհ.)։

7

Ի. Տիմոթ. գ. 14. 15։

— Համբուրեսցիս զիս 'ի համբուրից բերանոյ քո. զի առաւ են ստինք քո քան զգինի.... Եւ ո՞վ է հարսն, թէ ոչ եկեղեցի հեթանոսաց. կամ ո՞վ է փեսայն, եթէ ոչ Յիսուս Քրիստոս Որդի Աստուծոյ....։ Եւ զի՞նչ երկու առատ ստինքն, եթէ ոչ (երկու) կտակարանք Աստուծոյ, որ արբուցանեն զամենայն ազգս հոգևոր կաթամբն գիտութեանն (Գ. Լուս. յԱգաթ.)։

— Ճշմարտութիւն հաւատոյ լոյս է աչաց մտացըն... որ զառաջնորդական զմիտսն լուսաւորէ, և Գրովք սրբովք յանդիմանն կացուցանէ զաներևոյթսն (Գ. Լուս. 'ի Յաճախ. ճառ գ)։

— (Պարտ է) կշռել և խորհել, ասել և առնել որ

'ի հաճոյս Աստուծոյ աւարտի ճշմարիտ վկայութեամբ սուրբ Գրոց, և մի՛ անկանել 'ի բազմախոյզ խնդիրս՝ որ վրիպեցուցանեն 'ի ստոյգ հաւատոց (Նոյն. անդ. ճառ. դ):

— Զօրութիւնն Աստուծոյ Գրոց գիտութեամբն ծանուցեալ լինի, և զնոյն ինքն զԱստուած չկարէ ոք գիտել կամ պաշտել որպէս պարտն է՝ առանց Գրոց գիտութեան (Ս. Շնորհ. 'ի Մեկն. Բ. Պետ. ճառ. զ. 'ի յորդ.):

8

Ել. իդ. 3: Բ. Օրին. լբ. 7: Սաղմ. հէ. 3—6: Ղուկ. ա. 2: Յովհ. իա. 25: Ա. Կորն. ժա. 2: Գործ. ժզ. 4: Բ. Թեսաղ. բ. 14:

— Ամենայն նահապետացն շատակեաց եղեալ 'ի բարերարութեանցն Աստուծոյ, սերեալք բազմացան. նոյնպէս և յետ ծննդոցն յերկարակեացս արարեալ, զի որք Աստուծոյն ստացան՝ պատմեսցեն հարք որդւոց, զի իբրև պատուիրանք զգուշացուցիչք լինիցին՝ առ 'ի ծանօթ առնել զնոսա Աստուծոյ. որպէս ասացաւ՝ թէ Հարցջի՛ր զհարս քո և պատմեսցեն քեզ (Գ. Լուս. յԱգաթ.):

— Բուռն հարի առ 'ի քննել զսա (այսինքն՝ ըզ-Գիրսն Գործոց Առաքելոց), զի զոչ գիտողսն սորին զարթուցից, և ոչ թողից 'ի թաքուստ մնալ այսչափ պատուական գանձուցս մեծաց՝ որ ոչ ինչ նուազ քան զաւետարանն շահեցուցանէ զմեզ բարձրագոյն իմաս-

*տիւք և ուղղութեամբք աւանդութեանց . . . ։ Է գտանել 'ի սմա և վասն Աստուածահաճոյ գործական վարուց, այլ և աւանդութիւնս յոյժ պիտանիս. զոր թէ ոչ աստի, ոչ այլ ուստեք մեզ լինէր գիտելի* (Ե. Ոսկեբ. 'ի Մեկն. Գործ. Ճառ ա̃)։

9

Բ. Պետ. գ̃. 1. 2։ Կողոս. ա̃. 23։ Ա. Պետ. ա̃. 10—12։

— *Հոգւոյ շնորհացն Աստուածութեանն արժանի եղեն* (*մարգարէք*) *ուսուցանել ամենեցուն զօրէնս Աստուծոյ, և զկամս և զկարգս Նորուն ուղղութեան երկնաւոր հրամանացն ամենայն ուրեք առաջի դնելով. որպէս Նոցուն իսկ մատեանք մարգարէութեանն հաւաստեաւ պատմեն* (Գ. Լուս. յԱգաթ.)։

— *Առեալ հոգելից և Աստուածամուխ Աստուածատեսացն զԱստուածատուր աւետիսն, և գրով հաստատեալ՝ և զմի աւանդութիւն՝ չորս աւետարանս սահմանեալ. ոչ օտարագոյնս 'ի միմեանց արուեստախօսեալ, այլ ամենագէտ Հոգւոյն Աստուծոյ՝ զմիաւոր ճշմարտութիւն հրամանացն Քրիստոսի պատմեալ* (Նոյն. անդ)։

10

Բ. Պետ. ա̃. 21։ Ա. Թեսաղ. բ̃. 13։ Ա. Կորն. բ̃. 12. 13։

— *Հաւատամք և 'ի սուրբ Հոգին՝ յանեղն և 'ի*

կատարեալն, որ խօսեցաւ յՕրէնս, և 'ի Մարգարէս, և յԱւետարանս ('ի Հանգ.)։

— Հոգւովն Աստուծոյ խօսեցան (մարգարէքն) պատգամս, ո՛չ ըստ իւրեանցն ախորժակաց՝ այլ ըստ նախագուշակելոյ 'ի նոսա Հոգւոյն. և ո՛րքան ինչ միանգամ վկայութիւնս գրեցին նոքա զմարդանալոյն Քրիստոսի և զանպարտ չարչարանաց նորա, Հոգին էր՝ որ թելադրէր 'ի շրթունս նոցա։ Զի որպէս Պօղոս Քրիստոսիւ խօսէր առ որս բարբառէրն, նոյնգունակ և նոքա՝ Հոգւովն։ Եւ զայս Դաւիթ տիրապէս խոստովանի. Լեզու իմ, ասէ, որպէս գրիչ երագագիր գրչի, սովաւ գրել զգործս իմ Թագաւորին (Ս. Շնորհ. 'ի Մեկն. Ա. Պետ. Ճառ ի̃)։

— Չէին Մարգարէիցն բերանքն, այլ Հոգւոյն սրբոյ ազդեցութիւնն. որպէս եղէգն ո՛չ զոր կամի՝ գրէ, այլ զոր ձեռն հրամայէ, նոյնպէս և Մարգարէիցն լեզուն ո՛չ զոր կամէր՝ բարբառէր, այլ զոր Հոգւոյն սրբոյ ճոխութիւն տայր հրաման (Սեբեր. Ճառ թ̃)։

## 11

Երանելի Առաքելոցն ընկալեալ 'ի վարդապետութենէ ճշմարտութեանն, նախ կարօտական անձանցն օգուտ, և ապա օրինակ աշակերտեցելոցն, բարձեալ տանէին. երբեմն առանձինն, և երբեմն ժողովովք գումարելովքն զփառսն Քրիստոսի բարձրացուցանէին...։ Զոր և մարգարէքն յառաջագոյն գործէին, որք 'ի լե-

րինս՝ յանապատս՝ յայրս՝ և 'ի քարածերպս վիմաց զԱստուածեղէն կրօնիցն ծառայութիւն հարկանէին։ Նոյնպէս և ամենայն Հարքն, որ առաջնորդեցան յԱռաքելական կանոնացն, և յինքեանց անձանցն բերին օրինակս վերջնոցս։ Ուստի և երանելիս այս (Գրիգոր Լուսաւորիչ) բարձեալ տանէր զաւանդելոցն պատիւ, և ամենայն ուժեք մատուցելոց առ նա զնոյն պատուիրեալ գուշակէր։ Եւ այսպէս յառաջ ամենայն Աստուածեղէն գանձուցն վայելչութեամբք լցեալ՝ պարարտացուցանէր ամեթութեամբք զամենեսեան (Ագաթ. 'ի Պատմ.)։

— Այնպիսի սրբազան վարս պիտոյ էր մեզ ստանալ, որ գիրս ո՛չ պիտոյանայր, որպէս Նոյին և Աբրահամուն, և Նոցին որդւոց և Թոռանց, որպէս Յովբայն և Մովսիսին և Առաքելոցն, որ փոխանակ գրոյ 'ի սիրտս Նոցա բնակէր (Աստուած) և ուսուցանէր, և 'ի տախտակս սրտին գրէր, և ո՛չ 'ի գիրս (Գ. Նարեկ. 'ի Յառաջաբ. Մեկն. Երգ.)։

— Առաքեալքն զյոլով ժամանակս 'ի տաճարին զառ 'ի Քրիստոսէ Նոցուն կատարէին աւանդեալ զխորհուրդս եթէ զաղօթից, եթէ զհաղորդութեան։ Իսկ այժմ կանոնական սահմանաւ զմեզ պարսպեալ զգուշացուցին Նոցին աւանդապահք և ժառանգորդք՝ ո՛չ երթալ 'ի ժողովարանս և 'ի մատրունս Հրէից կամ հեթանոսաց (Յովհ. Իմաստ. յԱտենաբ.)։

— Զայս դաւանութիւն և զև ես անձառագոյնս,

յԱռաքելոցն սրբոց որպէս Աստուածային ժառանգութիւն որդւոյ 'ի հօրէ առեալ՝ հաստուցին մինչև առ մեզ (Ս. Շնորհ. 'ի Մեկն. Բ. Պետ. Ճառ ղ̃. 'ի յորդ.)։

— Ճ՚շմարիտ և սուրբ հաւատ ոչ միայն զխոստովանութիւն սուրբ Երրորդութեանն ասէ, այլ և զհաւատալն եկեղեցական բարեկարգ աւանդութեանցս (Ն. Լամբ. 'ի Մեկն. Պատ.)։

— Ընդէ՞ր արդեօք մինչ 'ի վախճան զգործս Նորա (Պաւղոսի) ոչ գրեաց (Ղուկաս), թերևս ասիցէ ոք։ Ասեմք՝ թէ բաւական էր այս որոց կամին 'ի միտ առնուլ, թէ և ոչ գրեցեալքն սոյնպիսիք իցեն։ Եւ դարձեալ՝ զի առ հարկաւորսն և եթ և ոչ 'ի ճառագրել ինչ Աստուածաբանքն փութային. այլ և բազում ինչ անգիր աւանդեցին (Յովհ. Ոսկեբ. 'ի Մեկն. Գործ. ճառ ա̃)։

Տե՛ս և 'ի համարն 8։

12

Յովհ. ժդ̃. 16. 17. 26։ ժզ̃. 13։ Ա. Տիմոթ. գ̃. 15։

— Վարդապետ է (Հոգին սուրբ), ուսուցանել և յիշեցուցանել զառ 'ի Քրիստոսէ ասացեալսն ամենայն ճշմարտութեամբ... Վերակացու է արթուն՝ Հրահանգիչ կարգաց եկեղեցւոյ (Ն. Լամբ. 'ի Ճառն գալստ. Հոգւոյն սրբոյ)։

— (Եկեղեցին) իբր զաշակերտ հրահանգեալ Հոգւոյն Աստուծոյ՝ փախչի 'ի նենգութենէ (Գ. Նարեկ. յԱղօթ. 'ի բանն հե̃)։

րինս՝ յանապատս՝ յայրս՝ և 'ի քարածերպս վիմաց զԱստուածեղէն կրօնիցն ծառայութիւն հարկանէին։ Նոյնպէս և ամենայն Հարքն, որ առաջնորդեցան յԱռաքելական կանոնացն, և յինքեանց անձանցն բերին օրինակս վերջնոցս։ Ուստի և երանելիս այս (Գրիգոր Լուսաւորիչ) բարձեալ տանէր զաւանդելոցն պատիւ, և ամենայն ումեք մատուցելոց առ նա զնոյն պատուիրեալ գուշակէր։ Եւ այսպէս յառաջ ամենայն Աստուածեղէն գանձուցն վայելչութեամբք լցեալ՝ պարարտացուցանէր ամէթութեամբք զամենեսեան (Ագաթ. 'ի Պատմ.)։

— Այնպիսի սրբազան վարս պիտոյ էր մեզ ստանալ, որ գիրս ո՛չ պիտոյանայր, որպէս Նոյին և Աբրահամուն, և նոցին որդւոց և թոռանց, որպէս Յովբայն և Մովսիսին և Առաքելոցն, որ փոխանակ գրոյ 'ի սիրտս նոցա բնակէր (Աստուած) և ուսուցանէր, և 'ի տախտակս սրտին գրէր, և ո՛չ 'ի գիրս (Գ. Նարեկ. 'ի Յառաջաբ. Մեկն. Երգ.)։

— Առաքեալքն զյոլով ժամանակս 'ի տաճարին զառ 'ի Քրիստոսէ նոցուն կատարէին աւանդեալ զխորհուրդս եթէ զաղօթից, եթէ զհաղորդութեան։ Իսկ այժմ կանոնական սահմանաւ զմեզ պարսպեալ զգուշացուցին նոցին աւանդապահք և ժառանգորդք՝ ո՛չ երթալ 'ի ժողովարանս և 'ի մատրունս Հրէից կամ հեթանոսաց (Յովհ. Իմաստ. յԱտենաբ.)։

— Օ՜ այս դաւանութիւն և զև ևս անճառագոյնս,

յԱռաքելոցն սրբոց որպէս Աստուածային ժառանգութիւն որդի 'ի հօրէ առեալ՝ հասուցին մինչև առ մեզ (Ս. Շնորհ. 'ի Մեկն. Բ. պետ. Ճառ դ. 'ի յորդ.)։

— Դ'շմարիտ և սուրբ հաւատ ոչ միայն զխոստովանութիւն սուրբ Երրորդութեանն ասէ, այլ և զհաւատալն եկեղեցական բարեկարգ աւանդութեանցս (Ն. Լամբ. 'ի Մեկն. պատ.)։

— Ընդէ՞ր արդեօք մինչ 'ի վախճան զգործս նորա (Պաւղոսի) ոչ գրեաց (Ղուկաս), Թերևս ասիցէ ոք։ Ասեմք՝ Թէ բաւական էր այս որոց կամին 'ի միտ առնուլ, Թէ և ոչ գրեցեալքն նոյնպիսիք իցեն։ Եւ դարձեալ՝ զի առ հարկաւորսն և եԹ և ոչ 'ի ճառազրել ինչ Աստուածաբանիցն փուԹային. այլ և բազում ինչ անգիր աւանդեցին (Յովհ. Ոսկեբ. 'ի Մեկն. Գործ. Ճառ ա)։

Տես և 'ի համարն 8։

12.

Յովհ. ժդ. 16.17.26։ ժզ. 13։ Ա. Տիմոթ. գ. 15։

— Վարդապետ է (Հոգին սուրբ), ուսուցանել և յիշեցուցանել զառ 'ի Քրիստոսէ ասացեալսն ամենայն ճշմարտուԹեամբ... Վերակացու է արԹուն՝ Հրահանգիչ կարգաց եկեղեցւոյ (Ն. Լամբ. 'ի Ճառն գալստ. Հոգւոյն սրբոյ)։

— (Եկեղեցին) իբր զաշակերտ հրահանգեալ Հոգւոյն Աստուծոյ՝ փախչի 'ի նենգուԹենէ (Գ. Նարեկ. յԱղօԹ. 'ի բանն հե)։

— Գեղեցիկ է այս եկեղեցւոյ սրբարար և օգնական և բարեխօս Հոգին սուրբ, և վարդապետ. վասն որոյ ասաց Փրկիչն. «Նա ուսուսցէ ձեզ զամենայն ինչ զոր ասացի ձեզ։ Ո՛չ ուսուցանէ միայն, այլ և յիշեցուցանէ զոր ինչ ասացի ձեզ»։ Զի ո՛չ են թէ այլ վարդապետութիւնք են Քրիստոսի, և այլ Հոգւոյն սրբոյ, այլ մի և նոյն (Կիւրեղ Երուս. 'ի կոչ. Ընծ. գլ. ժզ)։

— Իբրև զլեառն յաւիտենական՝ անհարուածելի է 'ի դիմամարտից. ըմբռնէ զհոգևորս իբր զհնարագրութիւն մեծին արուեստի. անմեղս և անվրիպութիւնս (իմա՝ առանց վրիպելոյ) ըստ Քրիստոսի հետոցն ընթանայ (Գ. Նարեկ. յԱղօթս 'ի բանն հե)։

13

Յակոբ. բ. 14. 17. 20. 26։

— Որպէս գլուխ՝ առանց անձին յարմարութեան ո՛չ կարէ կրել կենդանութիւն, և ո՛չ անձն առանց գլխոյ; նոյնպէս և հաւատ առանց գործոց, և գործք առանց հաւատոյ, մեռեալ են երկոքին ըստ Առաքելոյ (Շնորհ. 'ի Թղթ. Ընդհ.)։

— Որ բանիւ միայն ունի զառ 'ի յԱստուած խոստովանութիւնն, այլ ո՛չ գործով, այնպիսւոյն հաւատն մեռեալ է (Նոյն. անդ)։

14

Բ. Մակաբ. ժե. 4։ Դանիէլ բ. 28։ գ. 17։ Եբր. ժա. 6։

### 15

«Նկարեաց (Աստուած) զինքն և յղացաւ՝ ի միտս և 'ի խորհուրդս մարդոյն (Յակ. Մծբն. Ճառ ժզ)։

### 16

Հռովմ. ա. 20։

— Կարգեաց Աստուած զաշխարհս որպէս դպրոց, զի ուսցին արարածք զխնամս Արարչին յառնելն և 'ի կազմելն. (Գ. Լուս. 'ի Յաճախ.՝ Ճառ է)։

— Յարարածոցըս ծանուցաւ

Ստեղծող սոցուն՝ թէ է անքաւ (Ն. Շնորհ. 'ի Բան հաւատ.)։

### 17

Սաղմ. ժը. 2։ Իմաստ. ժգ. 5։

— Արարածք են Աստուծոյ և լուսաւորք՝ արեգակն և լուսին և աստեղք ամենայն, որք իւրեանց փոփոխմամբն ցուցանեն զիւրեանց սպասաւորութիւնն ըստ սահմանելոյն՝ այլ ևս արարածոց. և յայտ առնեն մեզ՝ եթէ արարածք են (Գ. Լուս. 'ի Յաճախ. Ճառ դ)։

— Մե՛ծ է և ընդարձակ երկին. լայն և անեզր է ծով. սփիւռ է երկիր. գեղեցիկ է արեգակն. ցանկալի՛ է մարդ. սիրահարուստ է տեսակ մարդոյ և ձգող... վայելուչ է ոսկի...։ Տե՛ս 'ի սոսա զԱրարիչն՝ համեմատեալ զանեղն ընդ եղականս, զարարողն՝ ընդ արարեալս, զկառավարն՝ ընդ բերեալս, զաղբիւրն իմաստից՝ ընդ բանաւորս, զբղխօղն սիրոյ՝ ընդ սիրա-

*հարուստքս. և արժ սոքօք առ Նորա գեղն և զօրութիւնն և քաղցրութիւնն՝ ճանապարհ, և լեր երկնային՝ երկնային խոկմամբ (Ն. Լամբ. 'ի Մեկն. Իմաստ. գլ. ժգ̃)։*

*— Ո՞ րք այնպէս հէք և թշուառական, որ տեսեալ զերկինս, տեսեալ և զծով և զցամաք, և զզուգախառնութիւն եղանակաց տարւոյ այնպէս ճշդիւ շափեալ, և զանխոտոր կարգ տուընջեան և գիշերոյ, իւրովի զայսոսիկ համարիցի լինել, և ոչ երկիրպագանիցէ Այնմ՝ որ զայս ամենայն իմաստութեամբ յարմարեաց (Յ. Ոսկեբ. Ճառ Ը̃, խօսեցեալ առ ժողովուրդն Անտիոքայ)։*

18

*Հռովմ. ա̃. 19։*

*— Այակաւք 'ի հեթանոսաց լուսաւորեցան, և ծանեան արարածովքս զԱրարիչն (Եփր. առ Վարդ. 'ի Մեկն. Ծնն.)։*

19

*Իմաստ. ժգ̃. 1։*

20

*Հռովմ. ա̃. 21 — 23։*

21

*Ոչ եթէ զանհաս բնութենէն կարիցէ ոք ճառել, և որպէս էն՝ զայն կարիցէ ոք պատմել. զի անհաս և անբաւ և անբաւանդակ և անքննին, անմատոյց անիմաց է յամենայն արարածոց (Գ. Լուս. յԱգաթ.)։*

— Ո՛ի եթէ է՝ զոր հաւատամք.

Բայց թէ զի՛նչ է՝ անգիտանամք (Ն. Շնորհ. 'ի Բան հաւատ.)։

— Ասեմք՝ եթէ Աստուած սէր է, և եթէ որպէս՝ զայն ոչ գիտեմք։ Ապա յայտ է, եթէ բազում ինչ է՝ զոր ասեմք զԱստուծոյ, և ոչ գիտեմք զի՛նչ ասեմք (Ս. Շնորհ. 'ի Մեկն. Ա. Յովհ. ճառ Է)։

— Յորժամ իմանան զնա, յայնժամ ճանաչեն՝ թէ անհաս է (Ն. Լամբ. 'ի Մեկն. Սաղմ.)։

22

Աստուածայինքն ամենայն անճառելիք են և անիմանալիք և անպատմելիք, և եզերովք ոմամբք ոչ սահմանին։ Զի որքան ինչ միանգամ ոք ասէ զնմանէ՝ զո՛չ էն սահմանէ 'ի վերայ նորա (Ս. Շնորհ. 'ի Մեկն. Ա. Պետ. ճառ ա)։

23

Անբաւ է մարդոյ տեսանել զԱստուած գոյիւ իւրով... բայց իբրև ինքնակամ կամօք բարերարութեամբ իւրով զինքն ցուցանէր (Աստուած)... ումեմն՝ լոյս, ումեմն՝ հուր։ Թէ ասիցեմք՝ եթէ հուր է, զոր ինչ տեսանեմքն՝ ասեմք. թէ ասիցեմք՝ լոյս է... Նմանութիւնք ցուցանեմք աներևութին վասն մերոյ անհասութեան (Գ. Լուս. յԱգաթ.)։

— Հոգի անուն զանմարմին բնութիւն նշանակէ՝ ըստ Տեառն ասելոյ՝ յաղագս յաւէտ անմարմնութեան,

նեթէ Հոգի՛ է Աստուած (Ն. Շնորհ. 'ի Թղթ. առ քահանայս Ցամնայք Նահանգի)։

—Սովորութիւն է զԱստուած վասն մաքրութեանն՝ հօր անուանել, և վասն պարզութեանն՝ որդւոյ. նաև բաղումս առնումք 'ի վերայ նորա այսպիսի անուանս. սակայն ոչ թէ մի ոք 'ի սոցանէ գէութիւն նորա ստուգէ՝ որ անհասն է, այլ միայն զներգործութիւն կամաց նորա մեզ յայտնի ցուցանէ (Ն. Լամբ. յԱտենաբան.)։

— ԶԱստուած որ հօր անուանեցաք՝ ոչ ստուգեմք հուր լինել, այլ՝ անհաս էութիւն. սակայն վասն մաքրողական ներգործութեանն՝ այսպէս կոչեցաւ (Նոյն. անդ)։

24

Մ՞ի է բնութիւն և գոյութիւն ամենասուրբ Երրորդութեանն, և ճիւր է ինքնութիւնն և յիւրմէ գոյութենէ (Գ. Լուս. 'ի Ցաճախ. ճառ ա)։

— Մ՞ի բնութիւն և մի Աստուածութիւն... ոչ յումեքէ եղեալ, և ոչ յետոյ սկսեալ (Ն. Շնորհ. 'ի Թղթ. Ընդհ.)։

25

Իսկ ոմք ասենն. Էր երբեմն՝ յորժամ ոչ էր Որդի, կամ էր երբեմն՝ յորժամ ոչ էր սուրբ Հոգին... զայնպիսիսն նզովէ կաթուղիկէ և Առաքելական եկեղեցի ('ի Հանգ.)։

— Ո՞չ զի ասեմք զՀոգին սուրբ՝ մշտնջենաւորա-

կից և էակից, խոստովանիմք միշտ առ Հօր և ընդ Հօր։ Որպէս Հայր էր և է, և միշտ է, և չիք ժամանակ՝ զի չէր. Նոյնպէս և Հոգին սուրբ՝ միշտ ընդ Հօր և ընդ Որդւոյ էր և է (Խոսր. 'ի Մեկն. Պատ.)։

## 26

Եսայ. խա. 4։ խգ. 13. խդ. 4։

— Նարերարն և Հաստիչն Աստուած՝ էր, և է, էր անսկիզբն յիւրում փառսն... և ճշմարտութիւն էր և է, յէութեան իւրում անփոփոխ (Գ. Լուս. 'ի Յաճախ. ճառ ղ)։

— Յառաջ քան զամենայն յաւիտեանս էր, և յայժմուս է, և յանվախճան յաւիտեանս եղիցի (Ն. Շնորհ. 'ի Թղթ. Ընդհ.)։

— Էր միշտ և է յայժմուս,

Եւ էացի՝ յանբաւ դարուց (Նոյն. 'ի Բանն Հաւատ.)։

## 27

Ղուկ. ը. 4։ Դատ. ժգ. 18։

— Զնորա զանունն ո՛չ ոք գիտաց, զի չէր ևս անդր քան զնա ոք, որ անտի և այսր անուանեսցէ (Գ. Լուս. յԱգաթ.)։

— (Աստուած) զիւր անունն ինքն միայն գիտէ (Նոյն. 'ի Յաճախ. ճառ բ)։

— Անուն Աստուծոյ ո՞ կարէ գտնել (Եղիշէ 'ի Մեկն. Տէրուն. աղօթ.)։

— Ո՛չ անուամբ չափեալ, և ո՛չ յորջորջմամբ նշանակեալ (Գ. Նարեկ. 'ի յԱղօթսն. բան լդ)։

— Աստուածն՝ արարչութեան և նախախնամութեան է անուն, այլ ո՛չ եթէ բնութեան. քանզի անգիտելի է այն մեզ, և 'ի վեր քան զամենայն միտս և զնշանակս (Ն. Լամբ. 'ի Մեկն. Պատ.)։

— Նոյն ինքն Աստուածային բնութիւնն անճառելի և անձայնելի կայ մնայ՝ գերազանցելով քան զամենայն ձայնի նշանակս (Գ. Աստուածաբ. յԱռ որս. ե)։

28

Անանունն (Աստուած) յանուն գայ. զի ո՛չ էր ոք ընդ անսկզբանն, որ կոչէր զանուն Աստուծոյ. այլ ինքն վասն բարերար կամացն՝ Արարիչ արարածոց անուանի... զիւր անունն ինքն միայն գիտէ (Գ. Լուս. 'ի Յաճախ. ճառ ի)։

— Անիմանալի է Աստուած և անանուն (Դիոնէսիոս 'ի գիրս Աստուածային անուանց)։

— Անուն նորա Արարիչ երկնի և երկրի. իսկ յառաջ քան զերկին և զերկիր, որպէս ինքնագոյ՝ ինքնանուն է ('ի Թղթ. Հայոց առ Միհրներսեհ Հազարապ. առ Եղիշեայ)։

29

Առակ. ժբ. 10։

— Արարիչն Աստուած և հաստիչն Տէր 'ի գործոց

*անտի իւրոց ունի զփառաւորութիւն և զկեցուցիչ ան-ուանսն զերախտեաց իւրոց՝ զԲարերարն և զՈղորմածն և զԳթածն, զՍուրբն և զԵրկայնամիտն, և այլն (Գ. Լուս. ՚ի Յաճախ. ճառ. ժ̃)։*

— *Ընութեան անուն ո՛չ գիտեմք Աստուծոյ. իսկ դրական անուանցն ո՛չ գոյ թիւ. վասն զի կոչի՝ Տէր, և Աստուած, Արարիչ, Թագաւոր, Լոյս, (Խոսրով ՚ի Մեկն. Ժամ.)։*

— *ԶԱստուծոյ բնութիւն ո՛ք յարարածոցս ո՛չ երբէք կարաց ճանաչել, ո՛չ զբնութիւն և ո՛չ զանուն նորա տիրապէս. այլ անուանեմք զնա բազմապատիկ անուամբք ըստ ներգործութեան կամացն (Ն. Լամբ. ՚ի Մեկն. Պատ.)։*

### 30

Սաղմ. ձբ̃. 19։ Երեմ. ժ̃. 10։ լգ̃. 3։ ծա̃. 57։ Եսայ. խբ̃. 8։ լգ̃։ 22։

### 31

*Օ՛մն Աստուած որ էն միշտ... զբազմանուն, զամենազօրն... իբր ո՛չ եթէ փոխանակ զի անուանեալ կոչի արդար, և բարերար, և ամենակալ, և կամարար, և այլ այնպիսի անուանք, վասն այնորիկ պարտ և պատշաճ է ազգի ազգի ինչ ասել, և այլազգ. այլ մի և նոյն է, և բիւրազգի զօրութիւնս Աստուածութեան ընդ ամենայն կողմանս առաքէ (Կիւրեղ Երուս. ՚ի Կոչ. Ընծ. գլ. ՛զ)։*

## 32

Էն (այսինքն՝ տառդ Է) էապէս մեզ քարոզէ
զՈր Էնն ուսեալ 'ի Մովսիսէ,
Թէ Աստուած էր 'ի սկզբանէ,
Եւ ո՛չ եղեալ 'ի յումեքէ (Ն. Շնորհ. 'ի Բանն հաւատ.)։

— Ո՛չ եթէ Որ Էն ասել՝ յայտնիչ է բնութեան Աստուածութեանն... այլ Է ասելն՝ գոյութեան է յայտնիչ, և ընդդէմ չէիցն՝ լոկ անուամբ կոչեցելոցն, որ ո՛չ է գոյութիւն նոցա աստուած, այլ նիւթ եղական (Մեծն Վարդան, 'ի Մեկն. Ել. Գլ. Գ)։

— Էութիւն հասկացեալ հաւատոց (Մովսէս), եթէ Աստուած է նա, որով Է՛ է, զի աստ ածող է...։ և զի միշտ է է, և ո՛չ է եղեալ (Նոյն. 'ի Պատմ.)։

## 33

Աստուած՝ բնութեամբ մի Աստուածութիւն միայն է... իսկ այլք յարարածոց՝ որք ո՛չ ունին զբնութիւն, ո՛չ կարեն տիրապէս ունել և զանուն՝ ո՛չ յերկինս, և ո՛չ 'ի վերայ երկրի... վասն որոյ եթէ ոք 'ի մարդկանէ եղականաց ուրուք մասանց զԱստուածութեան դնէ զանուն, ամբարշտէ, որպէս առաջին հեթանոսքն՝ որք ամբարշտեցան յԱստուծոյ։ Զի այս անուն (Աստուած)՝ նմա է սեպհական և վայելուչ՝ որ 'ի վեր է քան զամենայն անուն... զի Աստուածն անուն՝

Արարչութեան է (Ն. Շնորհ. 'ի Թղթ. առ քահ. Ցամպյք Նահանգի)։

Տես և 'ի համարն 34։

## 34

— Աստուած անունն՝ արարչական է, և առ մեզ ստուգաբանի՝ թէ Ա՟ ե՟ծ ո՟ղ (Խոսրով 'ի Մեկն. Ժամ.)։

— Ստեղծիչ արարածոցս գիտացեալ միայն զնա, պյսր աղագաւ յարդեանց իւրացն կոչեցաք զարարիչն՝ Ա՟ծ, պյսինքն՝ Ա՟ ո՟ղ զոչէսն՝ յէութիւն և 'ի գոյութիւն՝ զերկնաւորն և զերկրաւորս (Ն. Լամբ. 'ի Մեկն. Պատ.)։

— Այն զօրութեանն՝ որ արար զամենայն ինչ, Ա՟ծ է անունն, որ թարգմանի՝ Ընդ մեզ յ՟ի ո՟ղ (Ց. Վանական Վ. 'ի Բացատր. աղօթ. Ամբակ.)։

Տես և 'ի համարն 32։

## 35

Եզեկ. Ե. 11։ Ժ. 5։ Դատ. Ե. 5։ Եսայ. խԸ. 2։

## 36

Գ. Թագ. Ը. 27։ Եսայ. կԶ. 1։

— Աստուած է արարիչ և անուստեք... երկինք ամենայնիւ, աշխարհ ամենայնիւ, և տիեզերք ամենայնիւ 'ի վեր ունել (զնա) ո՛չ բաւեն։ Ինքն պատեալ զամենայնիւ, 'ի ներքոյ ամենայնի, 'ի վերոյ ամենայնի,

արտաքոյ ամենայնի, և ամենայն 'ի նմանէ, և ամենայն 'ի նա (Գ. Լուս. յԱգաթ.)։

— Օ՛ի է անկէտ և անսահման,

Ա՛նեղ, ան'ուր, և անփախճան (Ն. Շնորհ. 'ի Բանն հաւատ.)։

— Ա՛նսկիզբն է Աստուած, անճառ և անհասական, որ ո՛չ տեղեօք սահմանի, և ո՛չ վայրօք բովանդակի (Սեբեր. ճառ ա)։

37

Սաղմ. ճը. 19. 22։ Երեմ. իգ. 23. 24։

— Ա՛նպարագիր և անվայրափակ տեղի ամենեցուն, բոլոր խնկութեամբ հուպ յամենեսի՛ն (Գ. Նարեկ. յԱղօթ. բան իգ)։

— Հուպ ամենից և մերձաւոր,

Ի՛ւ յումեքէ ո՛չ հեռաւոր (Ն. Շնորհ. 'ի Բանն հաւատ.)։

— Պատուանդան ոտից նորա երկիրս է. այլ հաստ է զօրութիւն նորա մինչև յանդունդս սանդարամետի (Կիւրեղ Երուս. 'ի կոչ. Ընծ. գլ. Ե)։

38

Յովհ. Ժդ. 23։ Ա. Յովհ. դ. 15. 16։

— Յորժամ որ յարդարութեան գործս է, և զգուշանայ զկամս վարդապետութեան Աւետարանին սրբոյ կատարել, ճանապարհ է այնպիսին Հոգւոյն սրբոյ և

*օթևան և տեղի հանգստեան* (Ն. Լամբ. ՚ի Մեկն. Առակ. գլ. Ը)։

39

Սաղմ. ԺԶ. 2։

— *Երկինք՝ փառացն Աստուծոյ լինին պատմաբան* (Գ. Նարեկ. ՚ի Ներբող Աստուածածնի)։

— *Ո՛չ միայն ՚ի բարձունս է* (Աստուած), *այլ՝ ամենայն ուրեք. այլ զի որ անդն են՝ կամարարք նորա ամենեքեան են, վասն այնորիկ անդ լինել ասեմք* (Խոսրով. ՚ի Մեկն. Պատ.)։

— *Ա՛նդ ասի Աստուած՝ ուր յայտնին գործք նորա, և ուր առաւելոյն՝ մանաւանդ մերձ է, և երևի յերկրորդ բանաւորքս, և առաւել մերձ ՚ի զօրս երկնից* (Եւագր. ՚ի Հարիւրաւորսն. գլ. Ա)։

Տես և ՚ի համարն 17։

40

Եւ. ԼԳ. 20։ Յովհ. Ա. 18։ Ա. Յովհ. Դ. 12։ Ա. Տիմոթ. Զ. 16)։

— *Ո՛չ տեսաւ* (Աստուած) *երբէք ՚ի մահկանացու մարմնաւորաց, նա՛ և ո՛չ ՚ի հոգեղինաց և ՚ի հրեղինաց զուարթնոց* (Գ. Լուս. յԱգաթ.)։

— *ԶԱստուած գոյիւ ո՛չ* (է) *տեսեալ ուրուք, ո՛չ հրեշտակաց և ո՛չ հրեշտակապետաց, ո՛չ սրովբէից և ո՛չ քրովբէից, ո՛չ բիւրաւոր բանակաց երկնաւոր զուարթնոց* (Նոյն. անդ)։

— ԶՈՐ ԷՆ Աստուած ո՛չ միայն մարգարէքն, այլ և ո՛չ հրեշտակք, և ո՛չ հրեշտակապետք տեսանեն (Յ. Ոսկեբ. 'ի Մեկն. Յովհ. ճառ ժե)։

## 41

Ա. Տիմոթ. ա. 17։

— Արարիչն ամենեցուն աներևոյթ է 'ի մարմնաւոր աչաց (Սահակ եպիսկոպոս յԵղիշ. գլ. ը)։

— ԶԱստուածութեանն բնութիւն մարմնաւոր աչաց տեսանել անհնար է (Կիւրեղ Երուս. 'ի Կոչ. ընծ. գլ. թ)։

— Աստուածութիւնն ըստ ինքեան աներևոյթ է (Գ. Աստուածաբան ճառ թ. առ Կղոդոնիոս)։

## 42

Բ. Օրին. դ. 4։ Իմաստ. ժգ. 13։ Եսայ. խզ. 11։ խե. 21. 22։ Մարկ. ժբ. 29։ Գաղատ. գ. 20։ Ա. Կորն. ը. 4։ Ա. Տիմոթ. բ. 5։

— Հաւատամք 'ի մի Աստուած՝ Հայր ամենակալ, յարարիչն երկնի և երկրի, երևելեաց և աներևութից ('ի Հանգ.)։

— Տէր Աստուած, որ նա միայն ինքնութեամբ, և յառաջ քան զնա չիք ոք այլ արարիչ ամենայնի (Գ. Լուս. յԱգաթ.)։

## 43

Երեմ. ժզ. 20։ Ա. Կորն. ը. 5. 6։ Իմաստ. ժգ. 21։

— Վասն դիցն թէ ասես՝ զոր կոչես դու աստուածս, ստոյգ իսկ են հաստուածք. վասն զի հաստեալք են 'ի մարդկանէ (Գ. Լուս. յԱգաթ.)։

— Սոքա (կռապաշտք) 'ի գեղ պատկերին զօշոտութեամբ տափեցան և կամօք երկրպագեցին. և զԱստուծոյ անունն՝ որում անհաղորդ են արարածքս, 'ի վերայ նոցին (կռոց, քարեայ և փայտեայ պատկերաց) կարդացին (Ն. Լամբ. 'ի Մեկն. Իմաստ. գլ. ժդ)։

44

Մատթ. Ե. 48։ Եբր. Է. 28։

— Կատարեալ է Հայր և զօրութեամբ, գիտութեամբ և իմաստութեամբ, արարչութեամբ և բարերարութեամբ... կատարեալ է և Որդի... կատարեալ է և սուրբ Հոգին (Գ. Լուս. 'ի Յաճախ. ճառ Բ)։

45

Մաղաք. Գ. 6։ Յակ. Ա. 17։

— Աստուած հոգի կենդանի է... անփոփոխ է (Գ. Լուս. յԱգաթ.)։

— Անփոփոխելի է Աստուած (Նոյն. 'ի Յաճախ. ճառ ԻԲ)։

— Յիւրում էութեան բնութեան և բարձրութեան՝ յորում էր և է, մշտնջենաւոր 'ի նմին կայ և մնայ անփոփոխելի... Զի որպէս Հայր, նոյնպէս և 'ի նմանէ Որդի և Հոգին, են անփոփոխելիք 'ի նոյն բնութեան (Ս. Շնորհ. 'ի Մեկն. Յակ. ճառ Դ)։

## 46

Սաղմ. ճխդ. 3։

— Ի վեր է (Աստուած) քան զիմանալիս յանսահմանութեան և յանքաւութեան իւրում (Գ. Լուս. 'ի Յաճախ. ճառ ա)։

— Որ վասն մեր 'ի չափաւորութիւն եկիր անչափդ Աստուած ('ի Ժամագիրս)։

— Տէրութիւն անսահմանելի, մեծութիւն անչափելի (Գ. Նարեկ. յԱղօթ. բան իը)։

## 47

Ղուկ. ա. 37։

— Զամենայն ինչ զոր ասէ՝ կարող է կատարել. և տկարանայ նմա և ոչինչ (Գ. Լուս. յԱգաթ.)։

## 48

Ամենակալ ինքնիշխանութիւն բոլոր էականութեան (Գ. Նարեկ. յԱղօթ. բան ծէ)։

— Աստուած իշխան է ամենայն եղելոց, և զոր ինչ կամի՝ առնէ իշխանաբար յարարածս իւր. և ոչ ոք ընդդիմանայ եղելոց 'ի նմանէ (Ն. Շնորհ. 'ի Թղթ. առ քահ. Յամայք Նահ.)։

— Աստուած մի է, միայն անձիշխան (Կիւրեղ Երուս. 'ի Կոչ. Ընծ. գլ. դ)։

## 49

Սաղմ. ճխզ. Ե։

— Անսկիզբն է (Աստուած) և ամենիմաց (Գ. Լուս. ՚ի Յաճախ. ճառ ժբ̅)։

— Ամենիմաստ ամենից հայր (՚ի Շարակ.)։

— Ոչան զամենայն մեծ է (Աստուած), քան զամենայն իմաստուն է (Կիւրեղ Երուս. ՚ի Կոչ. Ընծ. գլ. զ̅)։

— Թէպէտև նա ամենագէտ է, դու մի՛ յապաղեր խոստովանել նմա զմեղսն (Եփրեմ ՚ի Ճառն յղ. պահ.)։

## 50

Անեղծական՝ անստեղծական՝ անտարրական՝ Աստուածութիւնն ճանաչի... Նոյն պարզական և անշարժական միապէս (Գ. Լուս. յԱգաթ.)։

— Պարզականք (են՝ հրեշտակք) ՚ի պարզագունէն Աստուծոյ (Ն. Շնորհ. ՚ի Գով. հրեշտ.)։

— Աստուած պա՛րզ է և առանց շարադրութեանց, և առանց ձևոց (Յ. Ոսկեբ. Ճառ է̅. յղ. անհասան.)։

## 51

Սաղմ. ճա̅. 28։

— Մշտնջենաւորութիւն անսահման (Գ. Լուս. ՚ի Յաճախ. ճառ ա̅)։

— Աստուած մշտնջենաւոր, Աստուած յաւիտենական (՚ի Ժամագիրս)։

## 52

Ա. Տիմոթ. զ̅. 16։

— Անմահութիւն՝ Անեղի՛ն (Աստուծոյ) է տիրա-

## 46

Սաղմ. ճխդ. 3։

— Ի վեր է (Աստուած) քան զիմանալիս յանսահմանութեան և յանքաւութեան իւրում (Գ. Լուս. 'ի Յաճախ. ճառ ա)։

— Որ վասն մեր 'ի չափաւորութիւն եկիր անչափդ Աստուած ('ի Ժամագիրս)։

— Տէրութիւն անսահմանելի, մեծութիւն անչափելի (Գ. Նարեկ. յԱղօթ. բան իը)։

## 47

Ղուկ. ա. 37։

— Օ ամենայն ինչ զոր ասէ՝ կարող է կատարել՛ և տկարանայ նմա և ոչինչ (Գ. Լուս. յԱգաթ.)։

## 48

Ամենակալ ինքնիշխանութիւն բոլոր էականութեան (Գ. Նարեկ. յԱղօթ. բան ծէ)։

— Աստուած իշխան է ամենայն եղելոց, և զոր ինչ կամի՝ առնէ իշխանաբար յարարածս իւր. և ոչ ոք ընդդիմանայ եղելոց 'ի նմանէ (Ն. Շնորհ. 'ի Թղթ. առ քահ. Յամայք նահ.)։

— Աստուած մի է, միայն անձիշխան (Կիւրեղ Երուս. 'ի կոչ. Ընծ. գլ. դ)։

## 49

Սաղմ. ճխզ. 5։

— Ընկիզըն է (Աստուած) և ամենիմաց (Գ. Լուս. 'ի Յաճախ. ճառ. ժբ):

— Ամենիմաստ ամենից հայր ('ի Շարակ.):

— Որչափ զամենայն մեծ է (Աստուած), քան զամենայն իմաստուն է (Կիւրեղ Երուս. 'ի Կոչ. Ընծ. գլ. Զ):

— Ոչ էպէտև նա ամենագէտ է, դու մի՛ յապաղեր խոստովանել նմա զմեղսն (Եփրեմ 'ի ճառն յղ. պահ.):

## 50

Աներեւակելի՝ անստեղծական՝ անտարրական՝ Աստուածութիւնն ճանաչի... նոյն պարզական և անշարժական միապէս (Գ. Լուս. յԱգաթ.):

— Պարզականք (են՝ հրեշտակք) 'ի պարզագունէն Աստուծոյ (Ն. Շնորհ. 'ի Գով. հրեշտ.):

— Աստուած պա՛րզ է և առանց շարադրութեանց, և առանց ձևոց (Յ. Ոսկեբ. ճառ. Գ. յղ. անհասան.):

## 51

Սաղմ. ճԽ. 28:

— Ա՛շտնջենաւորութիւն անսահման (Գ. Լուս. 'ի Յաճախ. ճառ. Խ):

— Աստուած մշտնջենաւոր, Աստուած յաւիտենական ('ի Ժամագիրս):

## 52

Ա. Տիմոթ. Զ. 16:

— Անմահութիւն՝ Անեղին (Աստուծոյ) է տիրա-

## 46

Սաղմ. ճխդ. 3։

— Ի՞ վեր է (Աստուած) քան զիմանալիս յանսահմանութեան և յանքաւութեան իւրում (Գ. Լուս. 'ի Ցաճախ. ճառ ա)։

— Որ վասն մեր 'ի չափաւորութիւն եկիր անչափդ Աստուած ('ի Ժամագիրս)։

— Տէրութիւն անսահմանելի, մեծութիւն անչափելի (Գ. Նարեկ. յԱղօթ. բան իը)։

## 47

Ղուկ. ա. 37։

— Օ՛ ամենայն ինչ զոր ասէ՝ կարող է կատարել՝ և տկարանայ նմա և ոչինչ (Գ. Լուս. յԱգաթ.)։

## 48

Ամենակալ ինքնիշխանութիւն բոլոր էականութեան (Գ. Նարեկ. յԱղօթ. բան ծէ)։

— Աստուած իշխան է ամենայն եղելոց, և զոր ինչ կամի՝ առնէ իշխանաբար յարարածս իւր. և ոչ ոք ընդդիմանայ եղելոց 'ի նմանէ (Ն. Շնորհ. 'ի Թղթ. առ քահ. Ցամայք նահ.)։

— Աստուած մի է, միայն անձիշխան (Կիւրեղ Երուս. 'ի Կոչ. Ընծ. գլ. դ)։

## 49

Սաղմ. ճխզ. 5։

— Անսկիզբն է (Աստուած) և ամենիմաց (Գ. Լուս. 'ի Յաճախ. ճառ. ժբ̄)։

— Ամենիմաստ ամենից հայր ('ի Շարակ.)։

— Որքան զամենայն մեծ է (Աստուած), քան զամենայն իմաստուն է (Կիւրեղ Երուս. 'ի Կոչ. Ընծ. գլ. ղ̄)։

— Թէպէտև նա ամենագէտ է, դու մի՛ յապաղեր խոստովանել նմա զմեղսն (Եփրեմ 'ի Ճառն յղ. պաՀ.)։

## 50

Անեղծական՝ անստեղծական՝ անտարրական՝ Աստուածութիւնն ճանաչի... նո՛յն պարզական և անշարժական միապէս (Գ. Լուս. յԱգաթ.)։

— Պարզականք (են՝ հրեշտակք) 'ի պարզագունէն Աստուծոյ (Ն. Շնորհ. 'ի Գով. հրեշտ.)։

— Աստուած պա՛րզ է և առանց շարադրութեանց, և առանց ձևոց (Յ. Ոսկեբ. ճառ դ̄. յղ. անհասան.)։

## 51

Սաղմ. ճա̄. 28։

— Մշտնջենաւորութիւն անսահման (Գ. Լուս. 'ի Յաճախ. ճառ ա̄)։

— Աստուած մշտնջենաւոր, Աստուած յաւիտենական ('ի Ժամագիրս)։

## 52

Ա. Տիմոթ. զ̄. 16։

— Անմահութիւն՝ Անեղին (Աստուծոյ) է տիրա-

պէս. զի հրեշտակք Թէպէտև անմահք կոչին. սակայն եղականք են, և վրիպել նոցա 'ի շնորհացն Աստուծոյ՝ մահ կոչի (Խոսրով 'ի Մեկն. Ժամ.)։

— Շնորհատու բարեաց՝ յամենայնի առատ՝ անմահ Տէր ('ի Ժամագիրս)։

53

Ղուկ. ժը. 19։

— Տէր իմ Տէր, տուիչ պարգևաց, ինքնաբուն բարի (Գ. Նարեկ. յԱղօթ. բան գ)։

54

Ա. Թագ. բ. 2։ Ղևտ. ժա. 44։ ժթ. 2։ ի. 7։ Ա. Պետ. ա. 15։

— Սուրբ՝ սուրբ՝ սուրբ, սո՛ւրբ ես ճշմարտապէս՝ և ամենասուրբ ('ի Խորհրդատետրն. յաղօթս Պատ.)։

— Աստուած 'ի վե՛ր է քան զսրբութիւն... Սուրբ է Աստուած՝ ո՛չ որպէս մեզ հասանելի, այլ որպէս ինքեան միայնում է գիտելի (Խոսր. 'ի Մեկն. Ժամ.)։

— Ո՛չ թէ 'ի միոյ կողմանէն սուրբ է՝ և 'ի միւսմէն ոչ նոյնպիսի, այլ ամենևիմբ սուրբ, ամենևիմբ յստակ, բոլորովիմբ ազատ. բնութեամբ և էութեամբ ունի զսրբութիւնն, ո՛չ եկամուտ՝ և ո՛չ ստացական. և ամենեցուն սրբութիւնն 'ի նմանէ՛ է՝ մարդկան և հրեշտակաց (Ս. Շնորհ. 'ի Մեկն. Ա. Պետ. ճառ գ)։

55

Սաղմ. ճը. 8։ Երեմ. իգ. 24։

— Օրհնաբանեալ ահաւորութիւն, ամենավայր ձեռնկալութիւն (Գ. Նարեկ. Աղօթ. Բան ղզ)։

— Անսահման և անոլո՛րտ է բնութիւն Աստուածութեան յերկինս 'ի վեր և յերկիր 'ի խոնարհ. և չի՛ք ինչ այն տեղի՝ որ թափուր է 'ի նմանէն. զի յամենայնի լի՛ է և պատարուն (Ս. Շնորհ. 'ի Մեկն. Ա. Պետ. Ճառ Ը)։

— Ասեմք՝ եթէ ամենայն ուրեք է Աստուած, և ո՛չ գիտեմք ո՛րպէս է (Նոյն. 'ի Մեկն. Ա. Յովհան. Ճառ Ա)։

## 56

Երիս դաւանեմք զանձինս (Աստուածայինս), և ո՛չ առաւել կամ նուազ քան զերիսն (Ն. Շնորհ. 'ի Թղթ. առ Մանուէլ կայսր)։

— Երրեակ անձամբ թիւ կատարեալ
Զերրորդութիւնըն ծանուցեալ.
Ո՛չ քան զերիսն առաւելեալ,
Եւ ո՛չ երկուս կամ մին եղեալ (Նոյն. 'ի Բանն հաւատ.)։

## 57

Երանելի սրբոյ Երրորդութեանն բնութիւնն, անսահմանելի միապէս յերիս անձինսն է, 'ի Հայր և յՈրդի և 'ի Հոգին սուրբ (Մամբրէ, 'ի Ճառն յարութեան Ղազարու)։

— Մի՛ է Տէր, և մի Աստուած... Ո՛չ (երիս)

Տեարս՝ և ո՛չ (երիս) Աստուածս դաւանեմք զսուրբ զԵրրորդութիւնն... քանզի մի է Տէրութիւն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ... Երիս՝ և մի, մի՝ և երիս. քանզի մի էութիւն սուրբ Երրորդութեանն դաւանեմք՝ յերիս կայս կատարեալ անձանց (Սեբեր. Ճառ ա. վասն Հաւատոյ)։

## 58

Երեք անձինք... մի իսկութիւն, մի էութիւն, մի Աստուածութիւն (Գ. Լուս. յԱգաթ.)։

— Երեք անձինք և մի բնութիւն, մի Աստուածութիւն, զքեզ խոստովանիմք յաւէտ սուրբ Երրորդութիւն ('ի Ժամագիրս)։

— Խոստովանիմք համագոյ և անեղ զամենասուրբ զԵրրորդութիւնն՝ յերիս անձնաւորութիւնս բաժանեալ, և 'ի մի բնութիւն, և 'ի մի Աստուածութիւն միաւորեալ (Ն. Շնորհ. 'ի Թղթ. առ Մ. կայսր)։

## 59

Մատթ. իը. 19։ Յովհ. ա. 1. 14. 18։ գ. 35։ ե. 18—26, և այլն։ Ա. Յովհ. ա. 1։ ե. 7։ Յայտն. ժթ. 13։ Ղուկ. ժ. 21։ իգ. 46։ Մարկ. ա. 10. 11։ Մատթ. գ. 16։ ժբ. 28. 31։ Յովհ. ժգ. 17։ ժե. 26։ ժզ. 13։

— Հաւատով ճշմարտեսցուք 'ի մի Աստուած Հայր և Տէր և Արարիչ ամենայնի, և 'ի Միածին Որդին՝ որ

'ի Հօրէ և առ Հօր և ընդ Հօր, և 'ի սուրբ Հոգւոյն՝ որ 'ի նորուն էութենէ (Գ. Լուս. յԱգաթ.)։

— Նա՛ զի՞նչ իցէ որ ասէ՝ Բանն. միթէ բարբառ լռի՞կ իցէ բախիւն լեզուի ընդ օդս, որ յառաջ քան զասել ասողին՝ չէ՛ յայտ, և յետոյ անհետ՝ չէ՛ 'ի միջի. այլ վասն այսորիկ անուանեցաւ Բան. զի որպէս բան 'ի բերան ասողին, նոյնպէս և ամենայն հրամանք Հօր կամաց ելանեն 'ի բերանոյ Որդւոյ (Նոյն. անդ)։

— Նոյնպէս խոստանան (հերձուածողք՛ն) գիտել զԱստուած, որպէս և ոչ ինքն զինքն։ Իսկ մեզ շա՛տ է գիտել միայն, եթէ մինն (յերից անձանց Հայր է, և միւսն Որդի, և միւսն Հոգի սուրբ. և երեքեանն միոյ բնութեան և զօրութեան և Աստուածութեան են (Ս. Շնորհ. 'ի Մեկն. Բ. Պետ. Ճառ դ̄)։

— Ո՛չ երկուս անծինս, և կամ երկուս ծնունդս խոստովանիմք, այլ միածին, և մի ծնունդ, և մի Հոգի ճշմարտութեան՝ որ 'ի Հօրէ ելանէ (Սեբեր. Ճառ ա̄)։

Որք Բան ասեն ըստ Յովհաննու,
Նա յանուանէ փախչին յՈրդւոյ.
Ո՛չ գիտելով յիմար հոգւով
Թէ չէ՛ օտար Բանն 'ի յՈրդւոյ։
Զի որպէս ծնունդ է բան սրտի,
Նոյնպէս և Հօր ծընունդ Որդի...
Բան ասացաւ անուն նորին,
Զի անմարմին է ծնունդ բանին (Ն. Շնորհ. 'ի Բանն հաւատ.)։

## 60

*Մատթ. ժա̃. 27։ Յովհ. ղ̃. 45. 46։*

*— Աստուածայինքն ամենայն հաւատովք իմացեալ լինին, և ոչ քննութե̃բ (Իգնատ. 'ի Մեկն. Ղուկ. ա̃. 45)։*

*— Մանաւոր մեր գիտութիւնս տուեալ է 'ի Հօրէ վասն Որդւոյ, և յՈրդւոյ՝ վասն Հօր, և 'ի սոցուն՝ վասն Հոգւոյն, և 'ի Հոգւոյն՝ վասն Նոցին (Իգնատ. 'ի Մեկն. Ղուկ. ճ̃. 22)։*

*— Եթէ ոչ էր ասացեալ Գրոց մեզ՝ եթէ զՔրիստոս (ըստ Աստուածութեանն) Հայր (Աստուած) ծնաւ, ուստի՞ գիտէաք զխորհուրդ Աստուածութեանն (Եփրեմ. 'ի Բանն՝ Որ ունի զՀարսն, և այլն)։*

## 61

*Բ. Կորն. ժ̃. 14։*

*—Մարգարէքն (զխորհուրդ սրբոյ Երրորդութեան) յայտնէին և թաքուցանէին. յայտնէին բանիւք՝ և թաքուցանէին որդեամբք։ Զոր և մեծն Դաւիթ ծանուցեալ Հոգւոյն յայտնութեամբ՝ զխոստովանութիւնն առաջի դնէ զերից անձանց և զմիոյ Աստուածութեան և զտէրութեան և զիշխանութեան, այսպիսի իմն ունելով բանին. Ողորմութեամբ Տեառն լի եղև երկիր, այս՝ Հօր դէմք. Եւ բանիւ Տեառն երկինք հաստատեցան. այս՝ անյերկուանալի Որդւոյ դէմք. Եւ հոգւով բերանոյ Նորա ամենայն զօրութիւնք Նոցա..։ Եւ այլս յոգունս այսպիսիս՝ եթէ ոք հաւաստի միտ դնիցէ՝*

գտցէ 'ի բանս մարգարէիցն առակաւ և օրինակաւ ասացեալ վասն Որդւոյ և վասն Հոգւոյն (Ս. Շնորհ. 'ի Մեկն. Ա. Պետ. ճառ գ̃):

## 62

Հօր արարչի խորհուրդ 'ի մէջ առեալ ընդ արարչակից Որդւոյ և ընդ արարչակից Հոգւոյ, իբրև զխորհուրդ զառաջին Նախաստեղծն մարդոյ. զի որպէս անդըն ասաց, Թէ Արասցուք մարդ 'ի նմանութիւն պատկերի կերպարանաց մերոց, և անդէն ստեղծեալ Ադամ 'ի կենդանութիւնն 'ի չգոյէն հաստատեցաւ. Նոյն օրինակ և ասացեալ Հօր առ Որդին և առ Հոգին, ասէ՝ Եկա՛յք արասցուք Ադամայ օգնական նման նմա՝ ըստ նմանութեան պատկերի իւրոյ և կերպարանաց (Գ. Լուս. յԱգաթ.):

— Եւ ասաց Ած̃. Եկա՛յք իջցուք և պղտորեսցուք զլեզուս նոցա. և ո՛չ ասա՛ց՝ թէ Գնացէ՛ք իջէ՛ք և պղտորեցէ՛ք զլեզուս նոցա. որպէս և կարգ հրամանին պատշաճէր Աստուածութե̃ն. այլ՝ Եկա՛յք ասէ իջցուք և պղտորեսցուք. իբրև առ հաւասարութիւնն գործոյն 'ի Պղտորեսցուքն ասել, յիրաւի առ մարդոյն արարչութեամբն և լեզուացն բաժանմամբ՝ օրինակեաց զայս: Քանզի զմարդկութիւնն վասն մերոյ փրկութեան յանձըն առնլոց էր Աստուածութիւնն, զԹիւ Երրորդութեան երեսացն ուսուցանել Առաքելոցն (Նոյն. անդ):

— Տէր ասաց Միածնի Որդւոյ իւրոյ. Արասցուք

մարդ ըստ պատկերի մերում (Եփրեմ. Ճառ 'ի տօնն Բարեբան.):

—Այն որ ասաց, բա՛ «Արասցուք ըստ նմանութեան պատկերի», ապաքէն յայտ է թէ ընդ ումեմն որ առ նմա կայր՝ ասէ (Կիւրեղ Երուս. 'ի կոչ. Ընծ. գլ. ժա):

—Որ «Արասցուքն ըստ մերում պատկերի» ասաց, 'ի ձեռն յոգնական նշանակին զսուրբ Երրորդութիւնն ծանոյց (Գ. Նիւսացի, 'ի գիրսն կազմ. մարդ.):

—Արասցուք մարդ ըստ պատկերի մերում... Մերումն ասելով զանձինան յայտնեաց (Վարդ. 'ի Մեկն. Ծննդ. գլ. ա):

—Եկա՛յք իջցուք և խառնակեսցուք զլեզուս նոցա: Ընդ Որդի և ընդ Հոգի է բանս, որովք արար ըզմարդն ազգ մի և լեզու մի (Նոյն. 'ի նոյն գիրս. գլ. ժա):

—Ո՛չ թաքեաւ 'ի նմանէ ('ի Մովսէսէ) իմաստք Երրորդութեանն. քանզի ծանեաւ՝ եթէ Էն երե՛ք է (անձնաւորութեամբ), որպէս յառնելն զմարդն և 'ի բաժանել լեզուացն և յայլսն խոստովանի զերեքն (Նոյն. 'ի Պատմ. ըստ ձեռ.):

## 63

Մի է Աստուած Հայր, յորմէ ամենայն. և մի Տէր Յիսուս Քրիստոս, որով ամենայնքս. և մի սուրբ Հոգի նորոգող. Երրորդութիւն սուրբ: Զի Բանիւ Տեառն երկինք և երկիր հաստատեցան, և Հոգւով բերանոյ

նորա ամենայն զօրութիւնք նորա, որպէս ասացաւ մարգարէէն (Գ. Լուս. 'ի Ցաճախ. ճառ Ե):

Տես և 'ի համարն 61։

64

Խոստովանիմք զամենասուրբ զԵրրորդութիւնն՝ զՀայր և զՈրդի և զսուրբ Հոգին, յերիս անձնաւորութիւնս բաժանեալ (Ն. Շնորհ. 'ի Թղթ. առ Ալեքս)։

— Եւ ոչ դարձեալ Հրէականին հետևողի՝ Սաբէլի լիբէացւոյ՝ ձայնակցելով, զերիսն 'ի մի հաւաքեմք անձնաւորութիւն, այլ՝ բաժանեմք անբաժանաբար, և միաւորեմք որոշմամբ, ըստ ուղղափառ հարցն դաւանութեան (Նոյն. 'ի Թղթ. առ Մ. Կայսր)։

— Երկրպագեմք Հօր և Որդւոյ և սուրբ Հոգւոյն. զառանձնաւորութիւնսն որոշեմք, բայց զԱստուածութիւնն միաւորեմք. ոչ 'ի մի զերեսեանն հաւաքեմք՝ զի մի' զՍաբէլին ախտանայցեմք. և ոչ որոշեմք յերիս այլազգիս և օտարոտիս՝ զի մի' զԱրիոսին մոլեցիմք (Գ. Աստուածաբ. յԱռ որս. ճառ Թ. յղ. հաւատ.)։

— Մէպէտ և անձնաւորութեամբ որոշեալ են Որդի և Հոգի 'ի հօրէ, սակայն Աստուածութեամբն ոչ բաժանին, և ոչ բնութեամբ, և ոչ էութեամբ (Ս. Շնորհ. 'ի Մեկն. Ցակ. ճառ Է)։

65

Այս է կատարումն հաւատոյն, զՀայր և զՈրդի և զսուրբ Հոգին ճանաչել երիս անձինս և մի Աստուած,

ոչ գիտել 'ի նոսա առաւել կամ նուազ, կամ յառաջ կամ յետոյ, այլ՝ հարթ հաւասար և միապէս յամենայնի և նոյն բնութեամբ (Խոսրով. 'ի Մեկն. Պատ.)։

— Ո՛չ նախաթուելովն յԵրրորդութեանն՝ որ մեծ ինչ քան զմիւսն, և կամ զկնի անուանիլն՝ նուաստագոյն առ նմանն (Գ. Նարեկ. յԱղօթ. Բան լդ)։

— Ո՛չ ըստ բնութեանըն մեծ է Հայր
Քան որոց սկիզըն է և պատճառ.
Եւ ո՛չ նուաստք որք 'ի նմանէ.
Զի այս և զՀայր տըկար առնէ (Ն. Շնորհ. 'ի Բանն հաւատ.)։

— Երրորդութիւն անձնաւորեալ,
Յաստուածութիւն մի հաւաքեալ...
Ո՛չ արարած գոյ անդ թուեալ,
Եւ ո՛չ կըրսեր որ ծառայեալ.
Ո՛չ բարձրութեամբ որ մեծացեալ,
Ո՛չ ելևէջ աստիճանեալ (Նոյն. 'ի Վիպաս. Նախն.)։

— Ո՛չ մեծ և ոչ փոքր 'ի սուրբ Երրորդութեանն երևի. զի զմեծ և զփոքր, զծանր և զթեթև, զշատ և զսակաւ, ժամք և ժամանակք բովանդակեն։ Իսկ ուր ոչ ժամք, ոչ չափ և ոչ կշիռ մերձենայ յանբաւելի բնութիւնն, անդ ոչ նկարի ոչ փոքր և ոչ մեծ (Մամբրէ. Ճառ 'ի յար. Ղազարու)։

## 66

Յովհ. Ժ. 30։ Ժդ. 10։

— Մ՛ի է բնութիւն և գոյութիւն ամենասուրբ Երրորդութեանն (Գ. Լուս. 'ի Յաճախ. ճառ ա̃)։

— Երեք անձինք, մի կատարեալ կամք... մի խոկութիւն, մի էութիւն, մի Աստուածութիւն... մի զօրութիւն Աստուածութեան (Նոյն. յԱգաթ.)։

— Մ՛ի էութիւն, մի իշխանութիւն, մի կամք, և մի արարչագործ զօրութիւն յերիս անձնաւորութիւնս իմանի (Ն. Շնորհ. 'ի Թղթ. առ Ալեքս)։

— Խոստովանիմք և դաւանեմք, պաշտեմք և երկրպագեմք զզուգափառ միութիւն ամենասուրբ Երրորդութեանն, Աստուածութիւն անճառ, միշտ բարի, նոյնագոյ, հաւասարապատիւ (Գ. Նարեկ. յԱղօթ. Բան լդ̃)։

— Համապատիւ Հօր և Որդւոյ քարոզեցին զքեզ (սուրբ Հոգի) Աստուածաբանք եկեղեցւոյ ('ի Շարակ։)

67

Հայր ծնօղ է, և Որդին ծնունդ, և Հոգին սուրբ ելօղ...։ Հայր ոչ ծնունդ և ոչ ելօղ, և Որդի ոչ ծնօղ է և ոչ ելօղ, և Հոգին սուրբ ոչ ծնօղ է և ոչ ծնունդ, այլ միշտ զելողութիւն ունի...։ Արդ զայս դաւանութիւն ընկալան Հայք 'ի մեծէն Գրիգորէ (Լուսաւորչէ) և 'ի սրբոյն Ռստակիսէ և յերանելւոյն Ներսիսէ (Մամբրէ, 'ի ճառն յար. Ղազ.)։

— Ա՞յս է կատարումն հաւատոյն, զՀայր և զՈրդի և զսուրբ Հոգին ճանաչել երիս անձինս և մի Աստ-

ուած... ծնօղ՝ զՀայր, և ծնունդ՝ զՈրդի, և ելումն՝ զՀոգին՝ 'ի Հօրէ, և ոչ ծնունդ (Խոսրով. 'ի Մեկն. Պատ.)։

— Հայր ծնօղ ասի՝ և ոչ ծնունդ. և Որդի ծնունդ, ասի՝ և ոչ ծնօղ (Խոսրով. 'ի Մեկն. Ժամ.)։

— Խոստովանիմք զՀօր յատկութիւն անձնաւորութեանն՝ անծին և անսկիզբն. և զՈրդւոյ՝ ծնունդ անսկզբնականին Հօր աներղապէս և անժամանակ. և ըզՀոգւոյ՝ բղխումն և ելումն և արտաքս առաքումն 'ի Հօրէ անճառաբար (Ն. Շնորհ. 'ի Թղթ. առ Մանուէլ կայսր)։

— Զելօղն 'ի Հօրէ՝ զէակից Որդւոյն՝ սուրբ զՀոգին օրհնեցէք ('ի Շարակ.)։

— Դաւանեցին (Հայրապետքն) սուրբ զՀոգին՝ ելօղ 'ի Հօրէ՝ էակից Որդւոյ (անդ)։

68

Ի Հօրէն՝ Որդի և Հոգին սուրբ, այլ ո՛չ կոչին եղբարք, և ոչ որդիք երկոքեանն. զոր օրինակ յԱդամայ են Սէթ և Եւայ, այլ ոչ եղբարք և ոչ որդիք երկոքեան (Մամբրէ, 'ի Ճառն յար. Ղազ)։

— Որպէս Հայր, նոյնպէս և որ 'ի նմանէ Որդի և Հոգին, են անփոփոխելիք 'ի նոյն բնութեան (Ս. Շնորհ. 'ի Մեկն. Ցակ. Ճառ. Ղ)։

— Ո՛չ անձն Հօր՝ է անձն Որդւոյ, և ոչ անձն Որդւոյ կամ սուրբ Հոգւոյն՝ է անձն Հօր, Թէպէտ և ան-

գըստին 'ի միջի էութենէ Հօր է Որդի և Հոգին սուրբ (Սեբեր. Ճառ ա̃. վասն Հաւատ.)։

Տես և 'ի Համարսն 69. 70։

## 69

Որդին յառաջ քան զամենայն յաւիտեանս ծնաւ 'ի Հօրէ (Գ. Լուս. յԱգաթ.)։

— Ի միջէ միայն Հօրէ միածին Որդի։ Ո՛չ երկոքին անծինք, և ոչ երկոքին միածինք. այլ՝ մի Հայր է առանց ծնանելոյ (յումեքէ)... և մի էր միածին Որդին մշտնջենաւոր 'ի Հօրէ ծնեալ (Կիւրեղ Երուս. 'ի Կոչ. ընծ. գլ. ժա̃)։

— Որ 'ի Հօրէ անմարմնաբար ծնեալ Որդի նախ քան զյաւիտեանս ('ի Շարակ.)։

— Որ յառաջ քան զյաւիտեանս անժամանակ ծնեալ 'ի Հօրէ անճառելի Բանդ Աստուած (անդ)։

## 70

Հաւատամք և 'ի սուրբ Հոգին Աստուածեղէն՝ Հոգի սուրբ, Աստուած կատարեալ՝ առանց առնելոյ, բղխումն մշտնջենաւոր առ 'ի Հօրէ (Գ. Լուս. յԱգաթ.)։

— Միածին Որդիդ (Հայր) ծնունդ Աստուածութեան քո, և Հոգիդ սուրբ՝ որ 'ի քէն բղխէ (Նոյն. անդ)։

— Որ անհիմնալիդ ես յէութեան և անպատում Հոգիդ ճշմարիտ, անսկզբնաբար բղխումն 'ի Հօրէ ('ի Շարակ.)։

— Այսօր զՀոգին ճշմարտութեան դաւանեցին սուրբ Հայրապետքն ծագումն առ 'ի Հօրէ յառաջ բղխեալ անհատաբար (անդ)։

— Որ զանձնաւոր զէութիւն բղխեցելոյն 'ի Հօրէ՝ Հոգւոյն սրբոյ դաւանեցին (սուրբ Հայրապետքն անդ)։

— Խոստովանիմք և զՀոգին սուրբ ճշմարտապէս Հոգի Աստուծոյ... յառաջ եկեալ յանսկզբնականէն Հօրէ անսկզբնաբար (Ն. Շնորհ. 'ի Թղթ. առ Մանուէլ կայսր)։

— Հաւատամք և 'ի սուրբ Հոգին, որ բղխէ առ 'ի Հօրէ, անձնաւոր Աստուած՝ հաւասար և անեղակից Որդւոյ (Գ. Կաթող. 'ի Թղթ. առ Մ. կայսր)։

— Որպէս զԲանն Յովհաննէս աստուածաբանեաց յասելն «Բանն էր առ Աստուած», նոյնպէս և զՀոգւոյն՝ Բանն՝ յասելն «Հոգին սուրբ որ 'ի Հօրէ ելանէ». զի նոյն է ծնունդն և ելողութիւնն։ Եւ ըստ որում Բանն մարմնացեալ՝ Միածին կոչի յԱւետարանչէն՝ յասելն «Միածին Որդին որ 'ի ծոց Հօր», նոյնպէս և Հոգին՝ յիմաստնոյս, զի ունի զելողութիւնն ինքն միայնակ յԱստուծոյ Հօրէ, որպէս ասաց Քրիստոս «Հոգին (ճշմարտութեան) որ 'ի Հօրէ ելանէ» (Ն. Լամբ. 'ի Մեկն. Իմաստ. գլ. է)։

— Ասեն՝ թէ Հոգի յառաջ եկեալ է 'ի Հօրէ, զորպէսն մի՛ հարցանէր (Գ. Աստուածաբ. յԱռ որս. Ճառ Բ. յղ. հաւատ.)։

— Գիտեմ՝ զի զՈրդին ծնաւ (Հայր), և եթէ զի-

մրդ՝ անզխտանամ։ Գիտեմ՝ զի Հոգին 'ի նմանէ է, բայց եթէ որպէս 'ի Նա՝ ոչ գիտեմ (Ց. Ոսկեբ. 'ի գիրսն յղ. Անհասանելւոյն)։

## 71

Ո՛չ է Հայր ծնեալ ուստեք, այլ Որդի ծնեալ (է) 'ի Հօրէ՝ և ոչ արարեալ, և ոչ Հոգին սուրբ ստացեալ՝ այլ բղխեալ։ Մշտնջենաւորք (են Որդի և Հոգին սուրբ) միաբուն իսկութեամբ ընդ Հօր, և առ Հայր, և 'ի Հօրէ, որպէս բոց և ջերմութիւն՝ 'ի հրոյ, որպէս տապ և ճառագայթ՝ յարեգականէ (Գ. Լուս. 'ի Յաճախ. ճառ. զ)։

— Մի՛ին ծնունդ է Հօր՝ որպէս որդի, և միւսն՝ բղխումն 'ի նորին բնութենէ՝ ոչ որպէս որդի, այլ որպէս հոգի. և երկոքեան նորին են Հօրն, անձնաւորութեամբ 'ի նմանէ բաժանեալք, և ոչ բնութեամբ որոշեալք. որպէս նորին արեգականն են ջերմութիւն և ճառագայթ, ոչ անջատեալք 'ի նմանէ՝ թէպէտ այլ և այլք իցեն (Ս. Շնորհ. 'ի Մեկն. Յակ. ճառ. դ)։

## 72

Հայր է Հայրն միածնի Որդւոյ, և բղխումն (բղխող) Հոգւոյն սրբոյ, պատճառ նոցունց իսկութեանցն 'ի նոյն բնութենէ (Գ. Լուս. 'ի Յաճախ. ճառ. ե)։

— Հայր ո՛չ է 'ի պատճառէ իմեքէ, որպէս Որդի և Հոգի. այլ՝ ի՛նքն է պատճառ Որդւոյ և Հոգւոյ, միոյն՝

ծննդեամբ, և միւսոյն՝ ելողութեամբ (Ս. Շնորհ. ՚ի Մեկն. Յակ. ճառ դ):

— Զ Հոգին՝ Քրիստոսի ասել, ո՛չ ՚ի Նմանէ ասէ՝ իբր ՚ի պատճառէ, զի պատճառ Հայր միայն է որպէս Որդւոյ՝ Նմանապէս և Հոգւոյ, միոյն՝ ծննդեամբ, և միւսոյն՝ ելողութեամբ, ըստ անսուտ ձայնին. Նա՝ ասէ՝ Հոգին ճշմարտութեան, որ ՚ի Հօրէ ելանէ (Ս. Շնորհ. ՚ի Մեկն. Ա. Պետ. ճառ բ):

— Զ Հոգին՝ Քրիստոսի ասեմք՝ ո՛չ եթէ իբր ՚ի Նմանէ յառաջ սկիզբն առեալ և բղխեալ, որ է հաւասար Նմին և համափառ բղխումն, այլ՝ ՚ի Հօրէ... Հոգի Քրիստոսի ասեմք, իբր տնօրինաբար առեալ ՚ի Հօրէ, և ոչ եթէ ՚ի Նմանէ բղխեալ (Ն; Լամբ. ՚ի Մեկն. Պատ.):

## 73

Հայր է պատճառ անպատճառից,
Որդւոյ ծննդեամբ, Հոգւոյ բղխմամբ (Ն. Շնորհ. ՚ի Բանն հաւատ.):

Տե՛ս և ՚ի համարն 72:

## 74

Ս՚ի՛ զայս ասասցուք, եթէ էր երբեմն՝ զի չէր Որդի (Կիւրեղ Երուս. ՚ի Կոչ. Ընծ. գլ. ժա):

— (Որդին) Բա՛ն է ճշմարիտ. ո՛չ երբէք իցէ՝ և երբէք չիցէ, կամ երբեմն չէր՝ և երբեմն եղև, այլ միշտ հանապազ ՚ի սկզբանէ յաւիտենից էր ի՛սկ Նա. քան-

զի և աստղ նորա (Հայր)՝ մշտնջենաւոր էր (Եփրեմ. ՚ի Համաբարբ. գլ. ձ)։

Տես և ՚ի Համարն 25։

## 75

Ծնունդն առաջին՝ ՚ի Հօրէ յառաջ քան զանկէտ յաւիտեանս, մշտնջենական և յաւիտենական ծնունդըն՝ ՚ի մշտնջենական և յաւիտենական Հօրէն յառաջ քան զամենայն (Գ. Լուս. յԱգաթ.)։

— Ո՛չ նախ Հայր՝ և ապա Որդի, այլ՝ որպէս յաւիտենական է Հայր, յաւիտենական է և Որդի ընդ յաւիտենականին Հօր, և մշտնջենակից նմին ՚ի սկզբանն և ՚ի կատարածին՝ ծագմանն արեգական նմանելով ճառագայթից։ Զի որպէս ո՛չ նախ արեգակն՝ և ապա լոյս, այլ ՚ի միում ժամանակի երևին երկոքեան. այսպէս և լոյս Որդի՝ ՚ի լուսոյ Հօրէ ծագեալ, և ընդ նմին մշտնջենաւորեալ (Ն. Շնորհ. ՚ի Թղթ. առ Մ. կայսր)։

— Ո՛չ է յառաջ Հայր քան զՈրդի,
Եւ կամ Որդի՝ քան ըզՀոգի.
Այլ որպէս Հայր միշտ յաւիտեան,
Եւ Համագոյք միւր յէութեան (Ն. Շնորհ. ՚ի Բանն Հաւատ.)։

## 76

Սաղմ. լբ. 5. 6։ Իմաստ. թ. 1։ Կողոս. ա. 16։

— Տէր Աստուած, որ նա միայն ինքնութեամբ, և

յառաջ քան զնա չիք ոք այլ արարիչ ամենայնի, որ երևի և որ ո՛չն երևի (Գ. Լուս. յԱգաթ.)։

— Պաշտել զԱստուած (Հայր) արարիչ, և զՈրդին հաստիչ, և զՀոգին կազմիչ (Նոյն. անդ)։

— Հասարակաց Երրորդութեան է արարչագործութիւնն (Խոսրով. ՚ի Մեկն. Պատ.)։

— Մ՛իոյ բնութեան Աստուածային
Մ՛ի տէրութեանդ և միշտ էին,
Գ՛երակատար երիցդ անձին՝
Կատարողի արարածին,

փառք և պատիւ և զօրութիւն (Ն. Շնորհ. յՈղբերգ.)։

— Արարչագործ Աստուած, որ յո՛չնչէ գոյացուցեր զերկինս և զերկիր (՚ի Շարակ.)։

— Հաւատով խոստովանիմ և երկիր պագանեմ քեզ, Հայր՝ և Որդի՝ և սուրբ Հոգի, անեղ և անմահ բնութիւն, արարիչ հրեշտակաց և մարդկան և ամենայն եղելոց (Ն. Շնորհ. յԱղօթսն)։

77

Իմաստ. գ. 8։ է. 15. 16։ ժբ. 13։ ժգ. 3։ ժթ. 6։ Գործ. ժէ. 25. 28։

— Ամենայն արարածք հրամանաւ Նորա շարժին ըստ իւրեաքանչիւր կարգածոցն կազմածոց (Գ. Լուս. յԱգաթ.)։

— Նա է տուիչ և յաջողիչ (—ղձն) երկնաւորաց և երկրաւորաց (Նոյն. 'ի Ցաճախ. ճառ ժա):

— Խնամով սիրոյն (Աստուծոյ) լի են երկինք և երկիր և որ 'ի նոսա արարածք իցեն, և նորա նախախնամութեամբն վարին (Նոյն. 'ի Ցաճախ. ճառ ժբ):

— Ունիս յիւրաքանչիւր կարգի զամենայն արարածս քո՝ ուղիղ հրամանաւ մատակարարելով ('ի Ժամագիրս):

— Սկիզբն և կատարած ամենայնի Աստուած է, որ ամենեցուն զլինելն տայ և զբարւոք գոլն շնորհէ (Խոսրով. 'ի Մեկն. Ժամ.):

78

Կամօք Հօր եմուտ (Բանն Աստուած) յարգանդ Կուսին, և ոչ զարշեցաւ, վասն զի ինքն է սրբիչ ամենայնի (Գ. Լուս. յԱգաթ.):

— Գթածաբար զմերս զգեցաւ մարմին կամաւ Հօր և հաճութեամբ սուրբ Հոգւոյն (Խոսրով. 'ի Մեկն. Ժամակարգ.):

— Կամաւ Հօր և հաճութեամբ սուրբ Հոգւոյն եղև մարմնաւորիկ տնօրէնութիւն Որդւոյ (Նոյն. անդ):

— Մի 'ի յԵրրորդութենէն՝ Բանն Հօր՝ Որդին Միածին՝ կամաւ Հօր և Հոգւոյն... էջ յորովայն կուսին Մարիամու (Ն. Շնորհ. 'ի Թղթ. առ Աղեքս):

— Կամաւ Հօր և հաճութեամբ Հոգւոյն զմարմինն

զգեցաւ (Որդին)՝ որով չարչարեցաւ (Ս. Շնորհ. ՚ի Մեկն. Ա. Պետ. Ճառ ք)։

79

Մնաքեցաւ Աստուած յԱստուծոյ սուրբ Որդին, էառ զմարմին ՚ի կուսէ, մարդ կատարեալ՝ կատարեալ Աստուածութեամբն (Գ. Լուս. յԱգաթ.)։

— Որ յաղագս մեր մարդկան և վասն մերոյ փրկութեան, իջեալ յերկնից՝ մարմնացաւ, մարդացաւ, ծնաւ կատարելապէս ՚ի Մարիամայ սրբոյ կուսէն Հոգւոյն սրբով (՚ի Հանգ.)։

— (Նանն Հօր) ձգեալ յինքն յարենէ ամենամաքուր կուսին... միացոյց ընդ Աստուածութեան իւրում (Ն. Շնորհ. ՚ի Թղթ. առ Ալէքս)։

— Յարենէ կուսին ձգելով մարմին՝ արար կենդանի և Աստուծոյ մարմին (Նոյն. ՚ի Մեկն. Բարձր.)։

— Էառ կատարեալ Աստուածութիւնն զկատարեալ մարդկային բնութիւնս (Ն. Շնորհ. առ Մ. կայսր)։

— Աստուածն Բան... էառ զմեր բնութիւնս կատարելապէս ՚ի կուսէն (Նոյն. անդ)։

— Խառնեալ միացոյց յորովայնի կուսին զերկական բնութիւնս մեր ընդ անեղի իւրում բնութեանն (Նոյն. ՚ի Թղթ. առ քահ. Յամեցք նահանգի)։

— Միաւորեաց զմարմինն՝ զոր էառ ՚ի կուսէն՝ ընդ Աստուածութեան իւրում (Եփրեմ. ՚ի Ճառն ծննդ. Քրիստ.)։

## 80

Բանն թանձրանայ 'ի մարմնի, մարմնանայ անմարմինն՝ միացեալ բնութեամբ 'ի յերկուց ('ի Շարակ.)։

— Որ զփրկական տնօրէնութիւն մարդացելոյն վասըն մեր՝ ուսուցեր (ով տէր սուրբ Գրիգոր) մի յերկուց նոր խառնումն սքանչելի (անդ)։

— Ունիմք ասել զերկու բնութիւն՝ ըստ Գրիգորի Աստուածաբանի... եթէ բնութիւնք երկու... քանզի Աստուած և մարդ (Ն. Շնորհ. 'ի Թղթ. առ Մ. կայսր)։

— Կրկին էր (Քրիստոս), ոչ այլևայլ ոք, այլ՝ նոյն ինքն Աստուած և մարդ միանգամայն (Յովհաննէս վ. Սարկ. 'ի Բացատր. Հանգ.)։

— Կատարեալ ունի զկրկնակի բնութիւնն, զի մի՛ կորուսցէ զերկոսին. ոչ կէս Աստուած երևեալ 'ի վերայ երկրիս, և ոչ կէս մարդ ել յերկինս... յԱստուծոյ Աստուած, և 'ի կուսէ Քրիստոս (Եփրեմ. 'ի Մարգարիտն)։

— Կրկին էր՝ ըստ որում փառաւորեցաւ, և երկեաւ, և արտասուեաց, և քաղցեաւ, և ծարաւեցաւ օրինօք մարմնոյն (Գ. Աստուածաբ. 'ի Ճառն Աստուածայայտ.)։

## 81

Քրիստոս ոչ էառ զմարդկային անձն, այլ՝ զբնութիւն. և ոչ բաժանի յերկուս ըստ Նեստորի ('ի Յաճմ. ժող. Շիրակվանայ)։

— Յերկուց կատարեալ բնութեանց՝ յԱստուածայնոյ և 'ի մարդկայնոյ (եղև) մի անձնաւորութիւն կատարեալ՝ անայլայլելի և անբաժանելի բնութեամբ (Ն. Շնորհ. 'ի Թղթ. առ Ալեքս)։

— Եղև նոր խառնումն 'ի յերկուց անբաժանելի բնութեանց՝ Աստուծոյ և մարդոյ՝ 'ի մի անձնաւորութիւն միացեալ (Նոյն. 'ի Թղթ. առ Մ. կայսր)։

— Նա (Աստուածն Բան) զմեր բնութիւնս... և միացեալ ընդ իւր Աստուածային բնութեանն անշփոթ և անբաժանելի միաւորութեամբ (Նոյն. անդ)։

— Նոյն որ յաւէտ անմարմնական
Եւ եղելոցս արարչական,
Խառնի ընդ մեզ անշփոթաբար,
Եւ միանայ անճառաբար (Նոյն. 'ի Բանն հաւատ.)։

— Եղեալ հաւաստեաւ և առանց ցնորից մարդ, և անշփոթ միաւորութեամբ մարմնացեալ յԱստուածածնէն և 'ի սուրբ Կուսէն Մարիամայ ('ի Խորհրդատետրն Պատ.)։

— Այս անուանք (Յիսուս, Քրիստոս) զերկոսեանն մեզ նկարագրեն զբնութիւն՝ զԱստուածայինն և զմարդկայինն՝ ընդ միմեանս միանալով անշփոթելի և անանջատելի (Ս. Շնորհ. 'ի Մեկն. Ա. Յովհ. ճառ ը)։

— Նոր և սքանչելի խառնուածով միացան երկու բնութիւնքն 'ի մի անձնաւորութիւնն՝ պահելով և յետ միութեանն անշփոթ զտարբերութիւն բնութեանցն յատկութեան (Ն. Լամբ. 'ի Մեկն. Պատ.)։

## 82

(Հաւատամք) և 'ի մի Տէր՝ Յիսուս Քրիստոս, յՈրդին Աստուծոյ ('ի Հանգ.)։

— Նոյն Աստուածն կատարեալ՝ մարդ կատարեալ, հոգւով և մտօք և մարմնով, մի անձն, մի դէմ ('ի Ժամագիրս)։

— Նա զի ճշմարիտ մարդ և ճշմարիտ Որդի Աստուծոյ խոստովանեցաւ (հարիւրապետն զՔրիստոս) ուղիղ մտօք՝ ըստ Աւետարանչացն, հաստատեաց պյսու՝ եթէ Քրիստոս՝ Աստուած կատարեալ է և մարդ կատարեալ, 'ի յերկուց բնութեանց՝ մի անձն, մի դէմք, մի Որդի Հօր Աստուծոյ և մօր Կուսի (Բարսեղ Ճոն. 'ի Մեկն. Մարկ. Ճառ լԸ)։

— Ի մի պատկեր միացաւ առանց որոշման (Եփրեմ. 'ի Ճառն Այլակերպ.)։

## 83

Ընդպատկառացոյցք ([illegible]) սուրբ Հարքն երկուց բնութեանց Քրիստոսի՝ Աստուածայնոյն և մարդկայնոյն՝ լեալք, Բնութիւնք երկու ասելով, վասն զի Աստուած և մարդ... և եթէ՝ Հաւատոյ զերկոսին ունէր զբնութիւնսն Քրիստոս... Ո՛չ եթէ զերկուցն ասելով՝ հրաժարէին ասել զմին, և կամ եթէ զտորին հակառակն՝ զմին խոստովանելով՝ յամառէին յերկուցն գալ խոստովանութիւն. այլ համաձայնաբար երկոքումբքս այսոքիւք բարեփառու-

*Թեան ղամպարօք փայլեալք պայծառանային, երկուս ըստ բնութեան, և մի ըստ միաւորութեան զՔրիստոս քարոզելով (Յովհ. Իմաստ. 'ի Ճառն ընդդէմ Երեւութ.)։*

*— Առաջնորդ ունելով զսոսա (ուղղափառ վարդապետս) առ ճշմարտութեան ճանապարհն՝ որ տանի առ Աստուած, ուղղապէս և ազատաբար բերիմք 'ի կրկին տեսութիւնս բանից, մի ասելով բնութիւն Բանին մարմնացելոյ՝ ըստ սրբոյն Կիւրղի (Աղեքսանդրացւոյ) *՝ յաղագս անճառ միաւորութեանն. և երկուս՝ ըստ Աստուածաբանին Գրիգորի **՝ վասն անկորուստ և անյեղլի գոլոյ բնութեանցն՝ Աստուածայնոյն և մարդկայնոյն (Ն. Շնորհ. 'ի Թղթ. առ Մ. կայսր)։*

*— Զմի բնութեանն եղանակ՝ զոր ասեմք մեք, մի՛ ոք յայլ դէմս կարծիցէ, բայց յաղագս 'ի յերկուց բնութեանց անբաժանելի միաւորութեանն (Նոյն. անդ)։*

*— Եւ մի ասեմք բնութիւն այսու,*

---

* Բանն սրբոյն Կիւրղի Աղեքսանդրացւոյ՝ այս է. «Յետ միաւորութեանն ոչ անջատեմք զբնութիւնսն 'ի միմեանց. և ո՛չ յերկուս որդիս հատանեմք զմին և զանբաժանելին. այլ մի ասեմք Որդի, և որպէս Հարքն ասացին՝ Մի բնութիւն Աստուծոյ Բանին մարմնացելոյ ('ի Թղթ. առ Սեկունդոս)։

** Բանն Գրիգորի Աստուածաբանի՝ այս է. «Բնութիւնք երկու. քանզի Աստուած և մարդ» (յՃառ. որս. գլ. Թ. և 'ի Թղթ. առ Կղեդոնիոս)։

Ըստ խառնըրմանն անճառելւոյ.
Որպէս հոգի մեր և մարմին
Ի մի բնութիւնըս ժողովլին (Նոյն. 'ի Բանն հաւատ.)
— Երկու ասել դարձեալ բնութիւն
Վասն 'ի յերկուց գոլ միութիւն,
Չէ այս օտար ճշմարտութիւն,
Թէ չբաժանեն յերկուս ըզմին (Նոյն. անդ):

84

Որով էառ մարմին, հոգի և միտք, և զամենայն որ ինչ է 'ի մարդ, ճշմարտապէս՝ և ոչ կարծեօք ('ի Հանգ.):

— Խոստովանիմք զՈրդին Աստուծոյ զԲանն Աստուած... առեալ կատարելապէս զմերս բնութիւն՝ ըզհոգի և զմարմին և զմիտս (Սահակ եպիսկոպոս Տայոց՝ Մռուտն մականուանեալ. 'ի Թղթ. առ Փոտ պատրիարգ Յունաց):

— Էառ կատարեալ Աստուածութիւնն զկատարեալ մարդկային բնութիւնս՝ զհոգի և զմիտս և զմարմին (Ն. Շնորհ. 'ի Թղթ. առ Մ. կայսր):

— Բայց մեք այսպէս խոստովանիմք,
Աստուածայնոցըն հետևիմք,
Եթէ հոգի՝ մարմին և միտք,
Որով մեղան ազգ մարդկայինք,
Էառ 'ի մէնջ Աստուածըն Բան,
Եւ միացոյց բնութեամբ յինքեան (Ն. Շնորհ. 'ի Բանն. հաւատ.):

— Աստուածութիւնն մարմին եղև՝ հոգի ունելով բանական (Կիւրեղ Աղեքս. 'ի գիրս Պարապ.)։

85

Մարմնացաւ Որդին Աստուծոյ կամօք, և յանձն էառ զամենայն կարիս (կր-) մարդկային բնութեանս մերոյ, բայց 'ի մեղաց (Գ. Լուս. 'ի Յաճախ. ճառ ը)։

— Կրեաց զամենայն կիրս մարմնոյ և հոգւոյ՝ բաց 'ի մեղաց (Նոյն. անդ ճառ ժդ)։

— Առ զմարմին անըմբռնելին . . . և զամենայն անցս մարմնոյն յանձն առեալ իւրովք կամօք . . ։ Եւ ոչ ուրուք բռնադատութեամբ, բայց իւրովք անձնիշխան կամօք կրեաց զայնս (Նոյն. յԱգաթ.)։

— Ճանապարհորդեաց ընդ ամենայն կիրս մարդկային կենցաղոյս առանց մեղաց ('ի Խորհրդատետր Պատ.)։

— Անց ընդ ամենայն կիրս մարդկայինս՝ բաց 'ի մեղաց (Խոսրով. 'ի Մեկն. Ժամ.)։

— Զմերս առեալ ընտանեցոյց իւրում հրաշափառագոյն ներգործութեանցն՝ ինքեամբ զմերս ախտակրելով զանանցանելի կիրս՝ բաց 'ի մեղաց, որ է մեզ անճառելի և անգիտելի (Ս. Շնորհ. 'ի Մեկն. Բ. Պետր. 'ի յառաջաբ.)։

— Թոյլ ետ մարմնոյն և զամենայն ինչ կրել որ ոչ հետևին մեղաց՝ զքաղց, զվաստակ, զտրտմութիւն, զերկիւղ (Իգնատ. 'ի Մեկն. Ղուկ. իբ. 42)։

— Փրկիչն մեր (բնաւորական կիրք մոլորութեանց, որ-պիսի են՝ փառք, ծուլութիւն, նախանձ, ագահութիւն, և այլն) 'ի կեն-ցաղավարիցն ընդ մարդկան վարեցաւ՝ ուրանօր և կա-մեցաւ, և յորժամ և որքան. ո՛չ օտար յեղանակաւ և կամ ստուերաւ իւիք, այլ ճշմարտութեամբ (Յովհ. Իմաստ. 'ի Ճառն ընդդէմ Երևութ.)։

— Այսս ասենն զարձեալ (գիրք) եթէ ինքն ո՛չ հեռանէր կրիցն ախտամեայ, որպէս մեք, այլ կիրքն՝ ծա-ռայաբար նորին կամաց, ոչ ժուժկալութեամբ ըստ առաքինեացն, այլ իշխանապար՝ ըստ Աստուածու-թեանն։ Եւ յայտ է 'ի քաղցն անտի՝ զոր գրէ Աւե-տարանիչն, եթէ 'ի լնման քառասնեկին՝ ապա քաղ-ցեաւ։ Քանզի յայնժամ՝ քաղցեաւ՝ յորժամ թոյլ ետ բնութեանն կրել զիւրսն՝ վասն փորձողին համար-ձակելոյ (Ն. Շնորհ. 'ի Թղթ. առ Յակոբ եպիսկո-պոս Ասորւոց 'ի Մելիտինէ)։

— Զի կատարեալ էառ զբնութիւն
Աստուածքն Բան ըզմարդկութեան,
Պա՛րտ էր զերկիւղ և զտրտմութիւն
Յիւրումն կրել անօրէնութեան ('ի Շարակ.)։

86

Տեսանի 'ի Նմա ('ի Քրիստոս) և կամք (մարդկային), որ է բնական հոգւոյս շարժումն. տեսանի և ներգոր-ծութիւն ըստ մարմնոյ, զի յայտնի լինի աշխատու-

թեամբ մեր փրկութիւնն՝ և ոչ զօրութեամբ (Գրիգոր Դ. կաթող. 'ի Թղթ. առ եկեղեցին Հոռոմոց)։

— Նոյն ինքն էր՝ որ ներգործէր զԱստուածայինն Աստուածաբար, և զմարդկայինն՝ մարդկաբար, 'ի պէտս մերոյ փրկութեան. զի Աստուած էր և մարդ (Նոյն. 'ի նմին թղթի)։

— Ըստ կամացս օրինակի զոր ասացաքս՝ 'ի միոյ անձնիշխան կամաց Աստուածութեանն, երկուց լինել անհակառակաբար. Աստուածայինն և մարդկայինն, հաստատեմք և ներգործութեանն նոյնպէս լինել (երկուց) Աստուածայնոյն և մարդկայնոյն՝ 'ի միաւորութեան անդ, ոչ զբարձրագոյնն՝ Աստուածութեանն միայն տալով՝ առանց մարմնոյն, և ոչ զխոնարհագոյնն՝ մարդկութեանն առանձինն՝ առանց Աստուածայնոյն. այլ միոյ անձնաւորութեան զերկոսին զաստսիկ խոստովանիմք, երբեմն որպէս Աստուած՝ զԱստուածայինն ներգործելով, և երբեմն որպէս մարդ՝ զմարդկայինն (Ն. Շնորհ. 'ի Թղթ. առ Մ. կայսր)։

— Ո՛չ եթէ էութիւն յէութեան բնակեցաւ, այլ մի էութիւնն այն Բանին Աստուծոյ՝ որ եղև մարմին, երբեմն կրէր զմարդկայինն որպէս զմարդ՝ յորժամ թոյլ տայր հոգւոյն մարդկայնոյ և կամ մարմնոյն՝ կրել զիւրաքանչիւրսն, այս է՝ զքաղցնուլն, զծարաւիլն, զննջելն, զվաստակելն, զարտասուելն, զտրտմելն, զերկնչելն, զանզիտանալն, և զայլսն ամենայն. և երբեմն զԱստուածայինն յայտնէր 'ի ձեռն բազմապա-

տիկ նշանացն և Աստուածավայելուչ զօրութեանցն՝ յորժամ զայնոսիկ կամէր։ Ո՛չ ոմն զտկարագոյնն կրէր՝ և ոմն զհզօրագոյնն ցուցանէր, որպէս բաժանեն բաժանօղքն, զարտաքուստն և որ ըստ այսմ՝ մարդոյն տալով, և զյարուցանելն զՂազար և զայլսն՝ Աստուծոյ Բանին. այլ միաւորեալն ՚ի միութիւն (ըստ ապ. օրին. ՚է գ [illegible])՝ կրէր զիւրաքանչիւրսն՝ յորժամ կամէր, զմարդկայինսն իբրև զմարդ, զի մարդ էր, և զԱստուածայինսն իբրև զԱստուած, քանզի Աստուած էր (Նոյն. ՚ի Թղթ. առ քահ. Ցամոյք Նահանգի)։

87

Օ կամսն (Քրիստոսի՝ զԱստուածայինն և զմարդկայինն) ոչ այլևայլ (հակառակ) ասեմք, որպէս թէ Աստուածային կամքն հակառակ լինել մարդկայնոյն կամաց, կամ մարդկայինն՝ Աստուածայնոյն. այլ ՚ի միոյ էութենէն կրկին եղելոց կամաց, ըստ այլևայլ ժամանակի, երբեմն Աստուածային՝ յորժամ զԱստուածութեանն կամէր ցուցանել զզօրութիւն, և երբեմն մարդկային՝ յորժամ զմարդկութեանն կամէր յայտնել ըզխոնարհութիւն (Ն. Շնորհ. ՚ի Թղթ. առ Մ. կայսր)։

— Ո՛չ եթէ մարդկային կամքն զԱստուածայինն բռնադատէր... այլ՝ մարդկայինն Աստուածայնոյն հետևէր կամաց (Նոյն. անդ)։

— Կամէր ըստ Աստուածութեանն, վասն այնր և

հեռանեցուցանէր Աստուածութեանն զկամս մարմնոյն, և ասէր՝ Ո՛չ իմ կամս, այլ քո լիցի (Գրիգոր Գ. կաթող. 'ի Թղթ. առ Մ. կայսր)։

88

Ղուկ. բ. 21։ Մատթ. ա. 16. 23։ Յովհ. դ. 25։ Եսայ. է. 14։

— Որ Աստուած էր և Բան, յորժամ էջ յերկնից յերկիր, կոչեցաւ Յիսուս՝ որ է Փրկիչ, Քրիստոս՝ որ է Օծեալ Տէր՝ առաքեալ (Ն. Լամբ. 'ի Մեկն. Առակ. գլ. է)։

89

Յիսուս անուն՝ յեբրայականէն 'ի մեր Փրկիչ թարգմանի (Խոսրով. 'ի Մեկն. Ժամ.)։

— Յիսուս Քրիստոս ասել՝ Փրկիչ և Օծեալ լսի (Նոյն. անդ)։

Տես և 'ի համարն 88։

90

Մատթ. ա. 21։ ի. 28։ Ա. Տիմոթ. ա. 15։ Կողոս. ա. 13. 14։ Եբր. ե. 9։ Ա. Յովհ. դ. 14)։

— (Նոյն Քրիստոս) փրկել զժողովուրդն ոչ 'ի յայտնի պատերազմացն որ ըստ աշխարհի, և ոչ 'ի մարմնական ծառայութենէ, այլ 'ի մեղաց և յապականութենէ (Ս. Շնորհ. 'ի Մեկն. Յակ. Ճառ. ա)։

91

Որ անճառ Աստուածութեանն օծեալ զքո ծառայ-

ակման կերպ, այսօր հաճեցար օծանիլ իւղով 'ի մե-ղաւորաց ('ի Շարակ.):

— Որ խոնարհեցար 'ի մեզ իւղ Թափեալ անուն Օծելոյդ Աստուծոյ, խառնելով զԱստուածութիւնդ օծեալ զմարդկային առեր բնութիւն (անդ):

— Քրիստոս անուն՝ Օծելոյ կոչի, այսինքն՝ Աստուած և մարդ. զի Բանն մարմին եղև... և Աստուածութեամբն էօծ զմարմինն (Խոսրով. 'ի Մեկն. Ժամ.):

— Քրիստոս՝ ոչ սոսկ մարդկութեան է անուն, և ոչ լոկ Աստուածութեան. այլ Օծելոյ թարգմանի, այսինքն՝ Աստուած և մարդ. վասն զի Աստուածութեամբն էօծ զմարդկութիւնն (Նոյն. անդ):

— Քրիստոսն անուն՝ ոչ յատուկ Աստուածութեանն է, և ոչ սոսկ մարդկութեանն..: Եւ արդ վասն զի օծաւ մարդկութիւնն յԱստուածութենէ անտի, նմին իրի զփրկչականս զայս անուն ընկալաւ (Ս. Ներս. 'ի Մեկն. Յակ. Ճառ ա):

— Օ՛ մարդկութիւն նորա՝ արար Աստուածութիւն նորա Տէր և Օծեալ (Աթանաս. Ճառ ա):

Տես և 'ի համարն 94:

**92**

Եբր. բ. 14. 15: ե. 10: է. 21. 24: Մատթ. իա. 11: Ղուկ. իդ. 19: ա. 32. 33: Յովհ. ժը. 37: Յայտն. ա. 5: ժէ. 14:

— Երբև առնոյր զպատուիրանս օրինացն Մովսէս

'ի ձեռացն Աստուծոյ ('ի Սինէական լերին)... անդ առնոյր զաւանդութիւն իշխանութեան քահանայութեան՝ Թագաւորութեան և Մարգարէութեան 'ի ձեռաց Աստուծոյ։ Անդ ետ Նմա (Աստուած) զօրինակ օծութեանն Քրիստոսի...։ Որ միանգամ յօրինակ Նորա օծանէին՝ անտի օծան։ Ուստի և օծէր Ահարոն 'ի քահանայութիւն Տեառն, և առնոյր զքահանայութեան Թագն օծանել ըստ Նմին օրինակի...։ Անդ արար Մովսէս զարծաթի եղջիւր օծանութեան իւրոյ. ուստի քահանայքն և Մարգարէքն և Թագաւորքն օծանէին։ Անդուստ զայր կարգեալ օծութիւնն մի ըստ միոջէ... զի աւանդապահք տային զմիմեանս մինչև ցՅովհաննէս քահանայ, մարգարէ և մկրտիչ. և 'ի Նա հասեալ՝ իբրև 'ի ժառանգ մնացեալ։ Զի 'ի Նա հասեալ էր յառաջին Նախնեացն, Թագաւորացն, մարգարէիցն, և յօծելոց քահանայիցն՝ իբրև յաւանդապահ. և Նա ետ զքահանայութիւնն՝ զօծութիւնն և զմարգարէութիւնն և զԹագաւորութիւնն ցՏէր մեր Յիսուս Քրիստոս (Գ. Լուս. յԱգաթ.)։

— Ոանդ Աստուած երևեալ մարմնով յերկրի քահանայապետ ճշմարիտ ('ի Շարակ.)։

— Ս ան անչափ բարերարութեան քո՝ անպարագրելի Բանդ Հօր եղեր մարդ, և քահանայապետ մեր երևեցար ('ի Խորհրդատետր Պատ.)։

— Լ՛ր (Քրիստոս) Մարգարէ, և քահանայ, և Թագաւոր. ոչ զի ինքն կարօտ էր այնմ պատուոյ, այլ

վասն զանկեալսն յարուցանել (Սեբեր. Ճառ ը. 'ի անօրէնութիւն փրկչին).

— Արդ Թագաւորութեանն ոչ գոյ վախճան ('ի Հանգ.)։

— Զթագաւորն Քրիստոս և զԱստուած խաղաղութեան օրհնեցէք ժողովուրդք ('ի Շարակ.)։

93

Ղուկ. դ. 18։ Եսայ. կա. 1։

— Վկայեաց (Հոգին սուրբ) Միածնին Աստուածութեանն՝ 'ի հոսանսն Յորդանանու... Նոյն ինքն է օծումն մարդացելոյն Աստուծոյ (Գ. Նարեկ. յԱղօթ. Բան հե)։

94

Ղուկ. ա. 35։

— Զի թէպէտ ընդ օծմանն օրհնութեան (այսինքըն՝ փոխանակ օրհնութիւնական օծման)՝ Հոգին էր քեզ իսկաբար լրմամբ, և Աստուածութեան խառնութիւն բովանդակապէս (Գ. Նարեկ յԱղօթ. Բան ղգ)։

— ԶԱստուածութիւնն 'ի մարդկութիւնն միաւորեալ՝ Օծեալ անուանէ. և Հոգին սուրբ էր 'ի վերայ նորա վկայ և յարդարիչ անճառելի տնօրէնութեանն 'ի ծննդեանն և 'ի մկրտութեանն (Ն. Լամբ. 'ի Մեկն. Պատ.)։

95

Մատթ. գ. 16։ Մարկ. ա. 10։ Ղուկ. գ. 22։

— Անսկիզբն Բանդ Հօր, 'ի վախճան աւուրց խոնարհեցար և առեր զկերպարանս ծառայի՝ իբրև ըղճմարդ գոլով. եկիր մկրտիլ 'ի Յովհաննէ, և Հոգւով օծեալ՝ վկայեցար 'ի Հօրէ, Դա՛ է որդի իմ սիրելի ('ի Մեծ Մաշտոցի)։

— Տէրդ և կենդանարարդ՝ արարիչդ երկնի և երկրի 'ի յօծմանէ անտի (այսինքն՝ յետ մկրտութեան) սկսար քարոզել զաւետարանն արքայութեան, վկայեալ անստուստ 'ի Յովհաննէ՝ Օծեալ և Գառն Աստուծոյ՝ բարձօղ մեղաց աշխարհի (Գ. Նարեկ. յաղօթ. Բան ղզ)։

— Դարձեալ՝ և զայս մի՛ ոք տգիտասցի, թէ նոյն ինքն «Քրիստոս» («Օծեալ») անուն՝ Տէրն մեր՝ Հոգւոյն սեպհականեաց ներգործութեամբ, որ եկացն 'ի վերայ նորին մարմնոյ 'ի Յորդանան (Ն. Լամբ. 'ի Մեկն. Պատ.)։

— Այլ կայեաց Հոգին՝ որ հանգեաւ 'ի վերայ նորա, թէ նա՛ է Հովիւ. զի ընկալաւ նա 'ի ձեռն Յովհաննու զքահանայութիւն, զԱրքայութիւն (իմա՛ զթագաւորութիւն) և զՄարգարէութիւն (Եփր. 'ի Մեկն. Աւետ. Համաբարբ. գլ. դ)։

— Օծումն կոչի Հոգին սուրբ, զի երևելի անուամբն զաներևոյթ շնորհսն քարոզեսցէ. քանզի զառաջինն թագաւորք իւղով եղջերն սրբով օծանէին, և քահանայք և մարգարէք. իսկ Հոգին սուրբ՝ որ էջ հանգեաւ 'ի վերայ Կենարարին, յօրինակ, և ոչ 'ի կարօ-

տութիւն ինչ, առանց իւղոյ երեւեցաւ. Նաև յետոյ զբազում առանց ջրոյ լուսաւորեաց, և առանց իւղոյ զբազում էօծ (Սեբեր. Ճառ Գ̃)։

## 96

Եբր. Է̃. 27։ Թ̃. 14։

— Էջ (Որդին Ա̃յ) 'ի ծառայութիւն, զի իւրով մարմնովն լցցէ և կատարեսցէ զամենայն չափս կարգացն հանդիսի արդարութեանցն. զի միանգամայն բարձցէ զկարիս տկարութեան մարմնոյ մեղացն, և միանգամայն ինքն ինքեան քահանայացի Հօր իւրում, և միանգամայն ինքեամբ հաճեսցէ մատուսցէ զինքն պատարագ հաշտութեան Հօր իւրում, և նովին պատարագաւն մատուսցէ ընդ նմին զհաւատոն խոստովանութեան մերոյ (Գ. Լուս. Յաճախ.)։

— Յիշեսցուք զՏեառն մերոյ մարդասիրութիւնն, որ Աստուծոյ գոլով Որդի, սուրբ, անմեղ, անարատ, զատեալ 'ի մեղաւորաց, և վասն մեր մեղաւորացս իւրով մարմնովն կրեաց զչարչարանս խաչին... ինքն քահանայապետ՝ և ինքն պատարագ 'ի նմա գոլով (Խոսրով. 'ի Մեկն. Ժամ.)։

— Այսօր զենաւ Գառն Աստուծոյ վասն յանցանաց նախաստեղծին, 'ի վերայ խաչին պատարագեալ՝ հեղեր զարիւնդ 'ի փրկութիւն ('ի Շարակ.)։

— Եղև (Որդին Աստուծոյ) իբրև զմեզ մարդ...

մատոյց զինքն պատարագ կամօք իւրովք, և եբարձ զպարտիս մարդկութեանս մերոյ ('ի Մեծ Մաշտ.):

## 97

Յովհ. ժբ. 49. 50: ժգ. 19:

## 98

Հռովմ. ե. 21: ը. 3: ժդ. 9: Փիլիպ. բ. 10. 11: Մատթ. իը. 18:

— Մահուամբ եղեալ զմահ, և յարութեամբն իւրով զմեզ 'ի մեռելութենէ մեղացն յարոյց (Գ. Լուս. 'ի Ցաճախ. ճառ բ):

— Ի խաչին բևեռեցար Բանդ անըմբռնելի՝ մարմնով, և լուծեր զկապանս մեղաց, Քրիստոս Փրկիչ մեր ('ի Շարակ.):

— Զթագաւորն Քրիստոս բարեբանեցէք, որ 'ի յանձն էառ զմահ խաչի, և խափանեաց զմահու թագաւորութիւնն (անդ):

— Անմահն՝ մարմնով՝ վասն փրկութեան մերոյ ըզմահ ճաշակեաց, և խափանեաց զմահու թագաւորութիւն (անդ):

— Նա ինքնիշխանութեամբ յարուցեալ՝ զմահու եղեալ զիշխանութիւն (անդ):

— Թադէոսի Խաղաղաբեան...: Զմարգարէին առեալ զբան, զոր կանխագուշակ տեսութեամբ պատմագանեալ ասէր 'ի դէմս Քրիստոսի. Ես կացի թագաւոր 'ի նմանէ 'ի վերայ լերին Սիոնի սրբոյ նորա: Եւ դարձեալ

ասէ. Թագաւորեաց Աստուած 'ի վերայ հեթանոսաց, և այլն...: Զի թէպէտև Աստուածութեամբ էր թագաւոր յառաջ քան զյաւիտեանս 'ի վերայ ամենայնի. այլ զմարմնով թագաւորելն ասէ: Եւ զի արար խաղաղութիւն արեամբ խաչին իւրոյ, վասն որոյ և Թագաւոր Խաղաղութեան կոչէ (Խոսրով. 'ի Մեկն. Ժամ.):

— Տէրն խաչիւն էառ զիշխանութիւն 'ի վերայ երկրի ըստ մարմնոյ... Զի Աստուածութեամբն յառաջ քան զյաւիտեանս էր իշխան 'ի վերայ ամենայնի. իսկ մարմնովն յետ խաչին 'ի վերայ հաւատացելոց էառ զիշխանութիւն (Նոյն. անդ):

## 99

Յովհ. Թ̅. 4: ԺԷ̅. 4:

— Նա զի՞նչ այն իցէ՝ որ ասեն, թէ կատարեաց զկամս Հօր իւրոյ. եթէ ո՛չ՝ զի իւրով մարմնովն բարձրացուցէ զանուն յաղթութեան կատարման արդարութեան..: Եւ զի՞նչ իցեն կամք Հօր Նորա. եթէ ո՛չ՝ զի զորդիս մարդկան զմերժեալսն 'ի ներքոյ մահու՝ կանգնեսցէ 'ի կենդանութիւն (Գ. Լուս. յԱգաթ.):

— Լցեր զամենայն Հայրական անօրէնութիւնս քո ('ի Պատ.):

— Որ զհանգերձեալն խորհուրդ Հոգւոյն յայտնեաց տեսանողացն, և եկեալ կատարեաց Հօր և Հոգւոյ առաքմամբն ('ի Շարակ.):

— Որ ըստ կանխաձայն մարգարէիցն եկիր 'ի լրումն

խորհրդոյ. զոր անօրինաբար կատարեցեր վասն մերոյ փրկութեան (անդ)։

— Ամենայն Տնօրինականքն Քրիստոսի, խոնարհութիւնն, և թափումն, և մկրտիլն 'ի ծառայէն, և նշանագործութիւնքն, և խաչն և չարչարանքն, և թաղումն, և յարութիւնն, յայն սակս եղեն, որպէս զի զկեանս և զԱստուածպաշտութիւն մեզ շնորհեսցէ՝ զգլուխն ամենայն բարեաց և զմայրն ամենայն առաքինութեանց (Ս. Շնորհ. 'ի Մեկն. Բ. Պետ. Ճառ. ա)։

100

Ղուկ. իդ. 25. 26։

— Որ զնախագրեալսն առ 'ի քէն Մարգարէիւք՝ եկիր կատարել ('ի Շարակ.)։

— Որ զխորհուրդ անօրէնութեանդ քո ծանուցեր տեսանողացն (անդ)։

— Նազում այն էին ճառք Մարգարէիցն, որ ըզգալուստն Քրիստոսի գուշակէին, և զներգործութիւն խաչին և զթաղմանն և զյարութեանն և զհամբարձմանն։ Եւ նորա գալստեամբն 'ի գլուխ ելեալ կատարեցան (Ս. Շնորհ. 'ի Մեկն. Բ. պետ. Ճառ. գ)։

101

Տես 'ի համարսն 99 և 100։

102

Ընկեղեցիք Աստուծոյ, և ժողովք ուղղափառաց ('ի Շարակ.)։

— Նախապէս խոստովանիմք մայր եկեղեցի որոց 'ի Քրիստոս հաւատացեալք (Սահակ կաթող. 'ի կանոնագիրս)։

— Յամենայն ազգաց և 'ի լեզուաց՝ որք աշակերտեցան աւետարանին, և 'ի վէմն (Քրիստոս) հաւատովք մերձեցան... յամենեցունց մի տաճար հոգևոր և մի եկեղեցի շինեցաւ (Ս. Շնորհ. 'ի Մեկն. Ա. Պետ. Ճառ Դ)։

— Ո՜ հասարակաց լրութիւն այսր եկեղեցւոյ քում որքոյ Հովուաց և Հօտից՝ խնամեսցես 'ի մարմնի, և պահեսցես ուղղափառ խոստովանութեամբ՝ ըստ Առաքելական աւանդութեանցն մինչև 'ի միւսանգամ գալուստ քո յերկնից (Նոյն. 'ի Մեկն. Բ. Պետ. Ճառ Ը. 'ի Յորդ.)։

— Մ՛ի եկեղեցի Քրիստոսի անուանիմք ամենայն քրիստոնեայքս (Ն. Լամբ. 'ի Մեկն. Պատ.)։

— Կալարո՛ւք մեզ աղուէսս փոքրկունս զապականիչս այգեաց... Աղուէս զսատանայ կոչէ, և այգի՝ զեկեղեցի, որ են հաւատացելոց անձինք (Գ. Նարեկ. 'ի Մեկն. Երգ.)։

— (Եկեղեցի) է ժողովուրդ ընդ քահանայի միաւորեալ, և հօտ ընդ հովուի միակցեալ (Կիպրիանոս. 'ի Թուղթ. ԿԹ)։

**103**

**Կողոս. Ա. 18։ Եփես. Ա. 22։ Դ. 15։ Ե. 23։ Ա. Պետ. Ե. 3։ Եբր. ԺԳ. 20։**

## 104

Բ. կորն. Ժ. 3. 4։ Եփես. Զ. 10—17։ Ա. Տի-մոթ. Ա. 18։ Ա. Պետ. Բ. 11։ Ե. 8։

— Ձեզ ասեմ, ով եկեղեցիք միանձանց՝ և աշա-կերտութիւնք կրօնաստանաց... Տեառն զինուորեալք (Գ. Նարեկ. Աղօթ. Բան ՀԲ)։

— Մարդկայինս ազգի թշնամի է (սատանայ) (Ն. Լամբ. 'ի Մեկն. Սաղմ. ԾԺԸ)։

## 105

Բ. Տիմոթ. Դ. 7։ Յայտն. Զ. 5։

— Յաղթանակ համբերութեամբ կատարեցիք զըն-թացս ձեր (ով սուրբ վկայք), և փոխեցայք յերկ-րայնոցս 'ի յերկինս. ընկալայք 'ի Քրիստոսէ զպսակս անապական ('ի Շարակ.)։

— Յուսացեալքն յանուն քո սուրբ՝ պատերազ-մեալք յաղթեցին թշնամւոյն...։ Որք կամաւն իւր-եանց անցին ընդ հուր և ընդ սուր, և պսակից եղեն վերին զուարթնոցն (անդ)։

## 106

Եւ զի միշտ անդր (յուղղափառսն) ժողովիմք, սովորու-թիւն ունիմք Եկեղեցի անուանել զայն յարանուանա-պէս (յարժամու–թեանն), այլ ոչ բնաւորապար (Սահակ կաթող. 'ի Ճառն եկեղ.)։

— Եկեղեցի անուն տիրապէս 'ի վերայ ժողովրդեանն

առնու (Գիրն)՝ քան 'ի տանն. ըստ այնմ, զոր Աստուած առ Մովսէս ասաց. Եկեղեցացո՛ ինձ զժողովուրդդ, այսինքն՝ ժողովեա՛... ։ Ապա ըստ պարզ տեսութեան՝ ժողովքին մարդիկս, և ոչ եթէ տունս. և սա համանունաբար սոցա կոչի Եկեղեցի՝ իբր ժողովարան (Ն. Լամբ. 'ի Մեկն. Պատ.)։

## 107

Հաւատամք և 'ի մի միայն ընդհանրական և առաքելական եկեղեցի ('ի Հանգ.)։

— Վասն միայնոյ՝ սուրբ՝ կաթուղիկէ և առաքելական եկեղեցւոյ ('ի Ժամագիրս)։

— Զխաղաղութիւն պարգևեա՛ եկեղեցւոյ քում սրբոյ... և հաստատեա՛ 'ի մի հաւատ զկաթուղիկէ եկեղեցի ('ի Շարակ.)։

## 108

Հռովմ. ժբ. 5։ Եփես. դ. 1—6։

— Առաքելական եկեղեցիք թէպէտև ընդ բազում տեղիս են, սակայն մի ասին վասն միաբանական հաւատոյն (Խոսրով. 'ի Մեկն. Պատ.)։

— Մի է Քրիստոս, մի մկրտութիւն, և մի եկեղեցի, զոր ոչ Պաւղոս, այլ որ ինքեամբ ընդ մեզ խօսէր՝ յայտնեաց մեզ (Գրիգ. Աթղ. Տղայ. 'ի Թղթին առ վարդ. հիւս. կողմանց)։

— Մի է Տէր, մի հաւատք, մի մկրտութիւն, մի

*եկեղեցի 'ի զանազան ազգաց որոշեալ, և մկրտութեամբ ծնեալ. և Քրիստոսի անուանեալ (Ն. Լամբ. 'ի Մեկն. Պատ.)։*

**109**

Տե՛ս 'ի Համարն 103։

**110**

Յովհ. ժէ. 19։ Եբր. է. 26։

**111**

Ի. Տիմոթ. ա. 9։

**112**

Ա. Պետ. գ. 21։ Յովհ. ի. 23։

**113**

Եփես. ե. 25—27։ Գործ. ժե. 9։ Ա. Պետ. բ. 9։

**114**

Գաղատ. գ. 27. 28։ Կողոս. գ. 10. 11։

— Զի՞նչ է կաթողիկէն. — Տիեզերական, *զի ամենայն եկեղեցիք ուղղափառաց որ ընդ տիեզերս են՝ մի են... զի 'ի ծագաց մինչև 'ի ծագս երկրի՝ ուր և հասանի ճշմարիտ հաւատացեալն յեկեղեցիս ուղղափառաց՝ իւր եկեղեցի է, և ոչ որոշէ զնա՝ ոչ աշխարհն, և ոչ լեզուացն օտարութիւնն, այլ ընդունի որպէս մայր 'ի գիրկս իւր սատտիկ սիրով (Խոսրով. 'ի Մեկն. Պատ.)։*

— Տուն Աստուծոյ *զեկեղեցի կոչէ՝ զժողովս յամենայն ազգաց գումարելոց 'ի նա, այսինքն՝ զազգս հաւատացելոց (Ս. Շնորհ. 'ի Մեկն. Ա. Պետ. Ճառ Ժ)։*

## 115

Մատթ. իդ. 14։ Մարկ. ժզ. 15։ Ղուկ. ժդ. 29։ Կողոս. ա. 6։

— Կաթողիկէ անուանեալ է (եկեղեցի), զի ընդ ամենայն տիեզերս 'ի ծագաց մինչև 'ի ծագս երկրի է. և զի ուսուցանէ առանձինն և անպակաս 'ի գիտութիւն զամ մարդկան 'ի կարևոր հրամանս (Կիւրեղ Երուս. 'ի Կոչ. Ընծ. ԺԸ)։

## 116

Մատթ. իը. 20։

## 117

Եփես. բ. 19. 20։

— Որ հաստատեցեր բանիւ զեկեղեցի քո՝ Քրիստոս՝ 'ի վերայ Առաքելական վիմի ('ի Շարակ.)։

— Ի վերայ վիմի հաւատոյ հիման Առաքելոց և Մարգարէից շինեցեր զքո սուրբ զեկեղեցի (անդ)։

— Դու ես վէմ, և 'ի վերայ այդր վիմի շինեցից զեկեղեցի իմ. արդարև իսկ վէմ է ճշմարիտ դաւանութիւն հաւատոցն։ Որպէս Պետրոս 'ի վերայ Քրիստոսի շինեաց զանձն իւր վկայութեամբ մահու, նոյնպէս և եկեղեցի շինեցաւ 'ի վերայ Պետրոսի հաւատոցն՝ ոչ միայն 'ի Հռովմ, այլև ընդ ամենայն քաղաքս և գեօղս մեծամեծս մինչև ցփոքունս, նոյն հաւատք և նոյն հիմն և նոյն հաստատութիւն. քանզի մի է Տէր, և մի մկրտութիւն...։ Եւ որպէս Պետրոս 'ի Հռովմ

հաստատեաց զեկեղեցին, նոյնպէս և այլ Առաքեալքն ըստ իւրաքանչիւր վիճակեցելում աշխարհացն, ուր հրամայեցաւ նոցա լի՛ առնել զաւետարանն Քրիստոսի (Եղիշէ 'ի ճառն՝ որ 'ի Քարոզ. Առաք.)։

— Հայցեմք ողորմութիւն ամենայն եկեղեցեաց՝ որ յամենայն տիեզերս ըստ քարոզութեան Առաքելոցն շինեալ են, վասն որոյ և Առաքելական կոչեմք։ Իսկ որք Թիւրեալք են յԱռաքելոցն դաւանութենէ, նոքա ոչ ևս Առաքելական կոչին։ Իսկ Առաքելական եկեղեցիք Թէպէտ և ընդ բազում տեղիս են, սակայն մի ասին վասն միաբանական հաւատոյն (Խոսրով. 'ի Մեկն. Պատ.)։

## 118

Ո՛չինչ անվայելուչ և անարգարագան է առնել (խորհրդոց եկեղեցւոյ) զգալի պատկերս, այլ Աստուածարժան տեսութեան է՝ օրինակս կերպացուցանել բնաւորականօք և մարդկավայելուչ պատկերօք (Դիոնէսիոս. 'ի գիրս Եկեղ. Քահանայապ.)։

— Չկամի Աստուած կատարմանն պատճառանօք անարգել զաւանդն խորհրդոցն. զի մի՛ ասիցես, Թէ որովհետև մեք բաւական եմ հասանել, զի՞ պիտոյ իցէ մկրտութիւն ջրոյ. և մեր այնու ուշ եղեալ է՝ ցուցանել, Թէ Աստուած կարող է և առանց ջրոյ տալ զպարգևս շնորհացն, բայց մեք չկարեմք առանց ջրոյ ընդունել զշնորհսն. նա բաւական է և առանց ջրոյն լուսաւորել, բայց մեք չեմք բաւական առանց ջրոյն

առնուլ զլուսաւորութիւնն (Կերբերիանոս. Ճառ դ. վասն կրօն. և միրս.)։

## 119

Յովհ. ա. 16. 17։ Հռովմ. ա. 5։

— Ամենայն շնորհք Հոգւոյն յՈրդւոյ բաշխին (Գ. Լուս. յԱգաթ.)։

— Ի ձեռն Որդւոյ իջանեն ամենայն պարգևք 'ի Հօրէ յարարածս (Խոսրով. 'ի Մեկն. Ժամ.)։

Տես և 'ի Հանմարսն 103. 108։

## 120

Զի՞նչ իմչ շնորհ զոր առանց առաջնորդաց (իմա՛ [illegible] և [illegible]) տայ Աստուած. այլ վերստին ծննդեանն որ 'ի Հոգւոյն, և կենարար մարմնոյ և արեան Տեառն բաշխումն, թողութեան մեղաց դարձելոցն 'ի խոստովանութիւն ապաշխարութեան, և ամուսնութեամբ զուգութեան... և կամ այլ իմչ Աստուածատուր պարգևի միջնորդող՝ առաջնորդք եկեղեցւոյ լինին (Խոսրով. 'ի Մեկն. Ժամ.)։

— Հոգին այս սուրբ զօրացուցանէ զձեռս քահանայապետից 'ի շնորհաբաշխութիւն, քահանայից՝ 'ի նուիրագործութիւն, սարկաւագաց՝ 'ի սպասաւորութիւն եկեղեցւոյ սրբոյ (Ն. Լամբ. 'ի Ներբող Հոգւոյն սրբոյ գալստեան)։

## 121

Կարծ է նոցա ([illegible])՝ պատարագ մատուցանել,

և բաշխել զնոյն ժողովրդեանն, մկրտութիւն առնել. և ոչ յայլ ինչ համարձակել, այսինքն՝ ոչ օրհնել սեղան (եկեղեցւոյ), և ոչ վիճակել զոք աստիճանի. զի այս եպիսկոպոսին պատիւ է և իշխանութիւն (Ն. Լամբ. 'ի խորհրդ. կարգ. եկեղ.)։

Տե՛ս և 'ի համարն 161։

## 122

Տե՛ս 'ի համարն 120։

## 123

Յովհ. գ. 5։ Ղուկ. ժգ. 3։ Յովհ. զ. 52. 54. 55։

Տե՛ս և 'ի համարսն 134. 140. 141. 144. 145։

## 124

Ա. Տիմոթ. Ե. 22։

Տե՛ս և 'ի համարսն 151. 167։

## 125

Եբր. զ. 4—6։

— Հաւատամք 'ի մի մկրտութիւն ('ի Հանգ.)։

— Մի՛ 'ի սմա (իմա՝ յեկեղեցւոջ) չուայցանէ 'ի մահն Քրիստոսի (Գ. Նարեկ.) յԱղօթ. Բան ՀԵ)։

Տե՛ս և 'ի համարսն 126. 129։

## 126

Հռովմ. ժա. 29։

— Դու մատչիս առ այն՝ որ մկրտէն. մատիր դու, մի յերեսս հայեցեալ որ երեւին քեզ, այլ փառն Հոգ-

ւոյն սրբոյ... զի սա պատրաստեալ է դրոշմել զոգի քո և տալ քեզ կնիք (Կիւրեղ Երուսաղ. 'ի Կոչ. Ընծ. դլ. ժէ)։

— Թէպէտ և մեղաւ (մկրտեալն), ոչ կարաց տկարութիւն մեղացն լուծանել զանքակտնելի կնիքն Տէրունական (Եղիշ. 'ի Բանն վասն յիշատ. մեռել.)։

— Ընտեղծական քո նկարագիր ([illegible])՝ նշխար պանծալի լուսոյ քրիստոնէական փրկաւէտ կոչմանս՝ ընդ իս պահեսցի (Գ. Նարեկ. յԱղօթ. Բան լը)։

— Մկրտութիւնն է անքակելի կնիք 'ի հոգին, որպէս և կարգն և Դրոշմն (Գ. Տաթև. 'ի հատ. Ամառ. քարոզ լը)։

## 127

Տես 'ի համարն 213։

## 128

Հռովմ. զ. 3—5։

— Զորս են ընդ քեզ թաղեալ մահուամբ
Նաւզանին մըկրտութեամբ,
Յարո՛ ընդ քեզ քոյին փառօք ('ի Ժամագիրս)։

— Զո՛ր օրինակ Յիսուս զաշխարհական զմեղսն եկն առ յանձն իւր, և մեռաւ, զի և զմահ սպանցէ, և զյարութիւնն հաստատեսցէ յարութեամբ իւրով. այնպէս և դու իջեալ 'ի ջուրսն, և երիւ զբնթէ թաղեալ 'ի ջուրս անդ՝ որպէս նա 'ի վիմին, յարիցես

[redacted]

…ային, և Հոգին իջանէր, և Հայրա-
…ւ ձայն գալանէր (Ս. Շնորհ. 'ի Մեկն.
Բ):

…ու (Յիսուս) 'ի Յովհաննէ, զի զջուրսն
…նութիւն մեղացն ընկղմեսցէ 'ի նմա, և
…տացէ մեզ մկրտութիւն (Ն. Շնորհ.
Ալեքս):

…րտութիւն (Յիսուս 'ի Յովհաննէ)... զի
…մբ խորով սահմանեսցէ զնա (Եփրեմ. 'ի
… Պլ. Դ):

…րեական մկրտութիւնն լրեցուցանէր (Յի-
…ով մկրտութեամբն՝ և մերումն սկիզբն արա-
…ռաջ խաղացուցանէր: Եւ որ ինչ իրք 'ի զատ-
…տարեցան, նոյն և 'ի մկրտութեանն. քանզի
…ընոսին էանց. և զմին զատարեցոյց, և միւսոյն
…ն արար: Նոյնպէս և զՀրեական մկրտութիւնն
…ուխ եհան, եկեղեցական մկրտութեան դուռն
…ց: Եւ որպէս յայնժամ 'ի միում ժամու զմին կա-
…րեաց, և միւսոյն սկիզբն արար. նոյնպէս և աստ
միում գետ զմին զատարեցոյց, և միւսոյն սկիզբն
արար: Քանզի պատուերն եղծ, և զճշմարտութիւնն
հաստատեաց (Յ. Ոսկեբ. 'ի Մեկն. Մատթ. գիրք Ա.
ճառ ժբ):

131

Մատթ. ժգ. 19:

միւսանգամ 'ի Նորոգումն 'ի կենդանութեան ծնեացեալ (Պիւրեղ Երուս. 'ի Կոչ. Ընծ. գլ. Ժ)։

Տես և 'ի համարն 133։

## 129

Հռովմ. Զ. 9։

— Խաչն՝ մկրտութիւն ասի, և մկրտութիւնն՝ խաչ. ապա ուրեմն որ երկրորդ անգամ մկրտի, ցուցանէ՝ թէ Քրիստոս երկրորդ անգամ խաչեցաւ, որում չէր հնար լինել (Բարսեղ Ճոն. 'ի Մեկն. Մարկ. Ճառ Ը)։

— Այնոքիկ՝ որ զերկուս մկրտութիւնս բերեն, ըզխաչելութիւն Որդւոյ Աստուծոյ և զխայտառականս նորա խնդրեն։ Այլ խաչելութիւն եղև միանգամ, և այլ ոչ ևս լինի. և մկրտութիւնն արդարացուցիչ տուաւ, և դարձեալ երկրորդում մեղաւորի նա ոչ լինի տուեալ (Եփրեմ. 'ի Մեկն. Եբր. գլ. Զ)։

## 130

Որդին Աստուծոյ վասն այնորիկ եկեալ մկրտի, հաստատել զմկրտութիւն ամենայնի՝ որ մկրտելոց իցեն. զի անդ իսկ զայս աւանդելով, փրկութիւն ամենեցուն յայտնեալ և 'ի միտ առեալ ծանիցի (Գ. Լուս. Ագաթանգ.)։

— Նախ ինքն (Քրիստոս) սկսաւ զհոգևորական վերստին ծնունդն՝ մկրտելովն Աստուածային բնութեանն մարմնովն 'ի Յորդանան 'ի Յովհաննէ. յո-

րում երկինք բանային, և Հոգին իջանէր, և Հայրական ձայնն զնա Որդի՛ դաւանէր (Ս. Շնորհ. 'ի Մեկն. Ա. Պետ. Ճառ Բ)։

— Մ՚կրտեցաւ (Յիսուս) 'ի Յորդանանէ, զի զջուրսն սրբեսցէ, և զհնութիւն մեղացն ընկղմեսցէ 'ի նմա, և զհոգևորականն տացէ մեզ մկրտութիւն (Ն. Շնորհ. 'ի Թղթ. առ Աղէքս)։

— Ո՛ր մկրտութիւն (Յիսուս 'ի Յորդանանէ)... զի մկրտութեամբ իւրով սահմանեսցէ զնա (Եփրեմ. 'ի Համաբարբ. գլ. Դ)։

— Զ՚Հրէական մկրտութիւնն լռեցուցանէր (Յիսուս) իւրով մկրտութեամբն՝ և մերումն սկիզբն արարեալ յառաջ խաղացուցանէր։ Եւ որ ինչ իրք 'ի զատկին կատարեցան, նոյն և 'ի մկրտութեանն. քանզի ընդ երկոսին էանց. և զմին դադարեցոյց, և միւսոյն սկիզբն արար։ Նոյնպէս և զՀրէական մկրտութիւնն 'ի գլուխ եհան, եկեղեցական մկրտութեանս դուռն եբաց։ Եւ որպէս յայնժամ 'ի միում սեղան զմին կատարեաց, և միւսոյն սկիզբն արար. նոյնպէս և աստ 'ի միում գետ զմին դադարեցոյց, և միւսոյն սկիզբն արար։ Քանզի զստուերն եղծ, և զճշմարտութիւնն հաստատեաց (Յ. Ոսկեբ. 'ի Մեկն. Մատթ. գիրք Ա. Ճառ ԺԲ)։

131

Մատթ. ԻԸ. 19։

## 132

Իջուցանէ (քահանայն) զերեխայն 'ի ջուրն, և ասէ (Այս անուն) ծառայս Աստուծոյ եկեալ յերախայութենէ 'ի մկրտութիւն, մկրտի յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ... Եւ զայս միանգամ ասելով՝ երիցս թաղէ (ընկղմեցուցանէ) 'ի ջուրն՝ յօրինակ երեքօրեայ թաղմանն Քրիստոսի ('ի Մեծ Մաշտոցն)։

— Մկրտէ զնա (զերեխայն) քահանայապետն՝ երիցս ընկղմամբք (Դիոնէսիոս. 'ի գիրս Եկեղ. Քահանայապ. մասն Բ. գլ. ը)։

Տես և 'ի համարն 133։

## 133

Զօրինակ մահուն Քրիստոսի յինքն նկարագրէ մկրտութիւնն աւազանին։ Երիցս ընկղմելն 'ի ջուրն՝ զերեքօրեայ թաղումն Յիսուսի նշանակէ. իսկ իջանել յաւազանն և ելանել՝ զյարութիւն Տեառն գուշակէ (Ս. Շնորհ. 'ի Մեկն. Ա. Պետ. ճառ ը)։

— Սրբազնաբար մկրտեալն՝ երիւք 'ի ջուրն ընկղմամբք՝ զԱստուածպետական մահուանն և զերեքօրեայ թաղմանն կենսատու Յիսուսին բերէ զնմանութիւն (Դիոնէսիոս. 'ի գիրս Եկեղ. Քահ. մասն Բ. գլ. ը)։

## 134

Գործ. ը. 38։ իբ. 16։ Հռովմ. զ. 4։ Գաղատ. գ. 7։

— Շնորհօք արար զմեզ եղբարս իւր (Որդին Աստուծոյ). և զարատ և զբիծ մեղացն լուծանէ զնորածըննելոցս աւազանաւն ՚ի Հոգւոյն, և ազատէ ՚ի ծառայութենէ չարին...։ Զի այսպէս է վերստին ծնունդ հոգևոր աւազանին, որ զախտաւոր ծնունդն վերստին ստանայ առանց ախտի շնորհօք և մարդասիրութեամբ ամենասուրբ Երրորդութեանն (Գ. Լուս. ՚ի Ցաճախ. Ճառ Բ)։

— Նորածնեալքս մկրտութեամբ սուրբ աւազանին՝ այսօր առնեմք ուրախութեամբ նշանաւ խաչի (՚ի Շարակ.)։

— Որ արարչակից ես Հօր և Որդւոյ (Հոգի՛ սուրբ). որով կենդանածնեալք ՚ի ջուրս արարածք, այսօր որդիս Աստուծոյ ծնանիս ՚ի ջուրց (անդ)։

— Նովաւ (Հոգւովն սրբով) աւազանն զմեզ վերստին ծնանի՝ որդիանալ Աստուծոյ՝ ազատելով ՚ի մեղաց և կենագործելով յանմահական կեանս (Խոսրով. ՚ի Մեկն. Պատ.)։

— Որպէս հաւատացաք, եթէ այն՝ որ բնութեամբ Որդի էր Աստուծոյ, եկն եղև շնորհօք Որդի մարդոյ՝ ծնանելով ՚ի կուսէն. Նմանապէս հաւատամք նովին չափով բնութեամբ, եթէ և մեք՝ որ բնութեամբ որդիք եմք Ադամայ, ծնանելով ՚ի կոյս աւազանէն՝ լինիմք շնորհօք որդիք Աստուծոյ (Ս. Շնորհ. ՚ի Մեկն. Ցակ. Ճառ Դ)։

## 135

Որպէս էջ Հոգին սուրբ 'ի վերայ փառակցին իւրոյ 'ի Յորդանան, նոյնպէս և 'ի վերայ ամենայն ուղղափառ հաւատով մկրտելոց իջցէ, զորս և յորդեգրութիւն Աստուած Հայր վերակոչէ շնորհօք (Ն. Շնորհ. 'ի Թղթ. Ընդհ. առ դասս քահ.)։

— Աղաւնին յայնժամ ('ի Գլուխն Քրիստոսի) յայն սակըս յայտնեցաւ... զի ուսանիցիս, թէ յորժամ դու մկրտիցիս, նոյնպէս գայ Հոգին (Յ. Ոսկեբ. 'ի Մեկն. Մատթ. ճառ ժբ)։

Տես և 'ի համարն 95։

## 136

Ղուկ. իդ. 49։ Գործ. ա. 8։

— Ո՛ր 'ի լըրման քառասնեկին
Յետ յարութեան սուրբ Պասեքին,
Ի՛ Ձիթենեաց հաներ լերին
Զընտրեալ ըզդաս մետասանին.
Եւ զաւետիս Հօր ըզՀոգւոյն
Խոստանայիր շնորհել նոցին (Ն. Շնորհ. յՈղբերգ. գիրք Գ.)։

## 137

Գործ. բ. 1—4։

— ԶՀոգւոյն սրբոյ առին՝ զզօրութիւն (Առաքեալքն), և զամենայն ազգացն լեզուացն բաժանելոց

ընկալան զգիտութիւն, զի ամենայն աշխարհաց որ ընդ ամենայն տիեզերս մարդիկ իցեն՝ բաւական լիցին ուսուցանել զհրամանս Աստուածութեանն (Գ. Լուս. ՅԱգաթ.)։

—Լցան ամենեքին հոսանօք Հոգւոյն սրբոյ. ելին ընդ տիեզերս՝ զի տայցեն զգիտութիւն սքանչելեաց Աստուածութեանն, բազմազգեան լեզուացն առնուլ 'ի միտ զնշանան, զոր ետ յերկինս 'ի վեր և յերկիր 'ի խոնարհ (Նոյն. անդ)։

Որ փոխանակ ծոցածին Բանին որ ել յերկինս՝ առաքեցաւ աւետիքն Հօր՝ Հոգին ճշմարտութեան, մխիթարել զորս ՅԱդամայ տրտմեցելոյ, և հրազինել զընտրեալ զդասս Առաքելոցն ('ի Շարակ.)։

## 138

Գործ. Բ. 14—17։ Ժթ. 5—7։

—Ապա թէ ոչ տեսանիցես (այժմ զնշան ինչ զգալի), մի՛ լինիցիս չհաւատալ։ Քանզի 'ի սկզբան չքնաղ ինչ և հոգևոր իրաց՝ յայտնի միշտ երևին երեսք և նշանք իմն այնպիսիք։ Զի թէպէտ և յետոյ այնպիսի ինչ ոչ լինիցի, յայնմանէ որ միանգամ յայտնեցաւ 'ի սկզբանն, և զայլն ևս ընդունիցիս հաւատովք... Եւ չեն ինչ պիտոյ մեզ այսուհետև կերպարանք երեսաց. քանզի բաւական են ընդ երեսացն՝ հաւատքն հաւանեցուցանել (Յ. Ոսկեբ. 'ի Մեկն. Մատթ. Ճառ ԺԲ)։

## 135

Որպէս էջ Հոգին սուրբ 'ի վերայ փառակցին իւրոյ 'ի Յորդանան, նոյնպէս և 'ի վերայ ամենայն ուղղափառ հաւատով մկրտելոց իջցէ, զորս և յորդեգրութիւն Աստուած Հայր վերակոչէ շնորհօք (Ն. Շնորհ. 'ի Թղթ. Ընդհ. առ դասս քահ.)։

— Աղաւնին յայնժամ ('ի Գետէն Քրիստոսէ) յայն սակըս յայտնեցաւ... զի ուսանիցիս, թէ յորժամ դու մկրտիցիս, նոյնպէս զայս Հոգին (Յ. Ոսկեբ. 'ի Մեկն. Մատթ. ճառ ժբ)։

Տես և 'ի համարն 95։

## 136

Ղուկ. իդ. 49։ Գործ. ա. 8։

— Որ 'ի լըրման քառասնեկին
Յետ յարութեան սուրբ Պասեքին,
Ի Ձիթենեաց հաներ լերին
Զընտրեալ ըզդաս մետասանին.
Եւ զաւետիս Հօր ըզՀոգին
Խոստանայիր շնորհել նոցին (Ն. Շնորհ. յՈղբերգ. գիրք Գ.)։

## 137

Գործ. բ. 1—4։

— ԶՀոգւոյն սրբոյ առին՝ զզօրութիւն (Առաքեալքն), և զամենայն ազգացն լեզուացն բաժանելոց

ընկալան զգիտութիւն, զի ամենայն աշխարհաց որ ընդ ամենայն տիեզերս մարդիկ իցեն՝ բաւական լիցին ուսուցանել զհրամանս Աստուածութեանն (Գ. Լուս. Յագաթ.)։

— Լցան ամենեքին հոսանօք Հոգւոյն սրբոյ. ելին ընդ տիեզերս՝ զի տայցեն զգիտութիւն սքանչելեաց Աստուածութեանն, բազմազգեան լեզուացն առնուլ 'ի միտ զնշանսն, զոր ետ յերկինս 'ի վեր և յերկիր 'ի խոնարհ (Նոյն. անդ)։

Որ փոխանակ ծոցածին Բանին որ ել յերկինս՝ առաքեցաւ աւետիքն Հօր՝ Հոգին ճշմարտութեան, մխիթարել զորս յԱդամայ տրտմեցելոց, և հրազինել զընտրեալ զդասս Առաքելոցն ('ի Շարակ.)։

138

Գործ. Ը. 14—17։ ԺԹ. 5—7։

— Ապա թէ ոչ տեսանիցես (այժմ զնշան ինչ զգալի), մի՛ լինիցիս չհաւատալ։ Քանզի 'ի սկզբան չքնաղ ինչ և հոգևոր իրաց՝ յայտնի միշտ երևէին երեսք և նշանք իմն այնպիսիք։ Զի թէպէտ և յետոյ այնպիսի ինչ ոչ լինիցի, յայնմանէ որ միանգամ յայտնեցաւ 'ի սկզբանն, և զայլն ևս ընդունիցիս հաւատովք... Եւ չեն ինչ պիտոյ մեզ այսուհետև կերպարանք երեսաց. քանզի բաւական են ընդ երեսացն՝ հաւատքն հաւանեցուցանել (Յ. Ոսկեբ. 'ի Մեկն. Մատթ. Ճառ ԺԲ)։

## 139

Լնու քահանայն զսուրբ իւղն ՚ի յափն իւր... և կնքէ սուրբ իւղովն զճակատն (մկրտելոյն)... զաչսն... զականջսն...զհոտոտելիսն...զբերանն...զձեռսն... զսիրտն... զքամակն... զոտսն (՚ի Մեծ Մաշտ.)։

— Որք ՚ի Քրիստոս Յիսուս մկրտեցան, զՔրիստոս զգեցան... Որք իջին յարգանդ հոգևոր աւազանին պարգևօք ամենասուրբ Երրորդութեանն. որհնութեամբք և քահանայական խորհրդածութեամբք, օծմամբ և Հոգւով ՚ի Քրիստոս լուսաւորեալ (Գ. Լուս. ՚ի Յաճախ. ճառ ի)։

— Արբազանին աստուածածնելութեան (Դրոշմի) կատարողականն պարգև և շնորհք՝ իւղոյն Աստուածայնով կատարմամբ կատարի (Դիոնէսիոս. ՚ի գիրս Եկեղ. Քահ. մասն Դ. գլ. է)։

— Հարկ է օծանիլ այնմ որ մկրտեալ իցէ. որպէս զի յառնուլ զմեռոնն, այս է՝ զօծումն, մարթասցի լինել օծեալ Տեառն, և շնորհազարդեալ (Կիպրիանոս. ՚ի Թղթ. հ)։

Տես և ՚ի համարն 140։

## 140

Ա. Յովհ. ի. 20. 27։ Բ. Կորն. ա. 21. 22։

— Նազմացոյց (սուրբն Գրիգորիոս) զամենայն եկեղեցիս, և կացոյց քահանայս. և Քրիստոսեան դրոշ-

մաւն զամենեսեան առ հասարակ ընծայեցուցանէր (լի) լինել ամենեցուն Հոգւոյն սրբով (Ագաթ.)։

— Որպէս յիջուման լուսարանի սուրբ աւազանին՝ լուսացմամբ մարմնոյն՝ զանձինն հաւատամբ առնուլ որդութիւն, այնպէս 'ի յօծուման իւղոյն պատարեալ յուսով՝ զՀոգւոյն զօրութիւն սովիմբ և 'ի սմին՝ համարիմք ունել ամենայնիւ աներկմտելի (Գ. Նարեկ. յԱղօթ. Բան ղգ)։

— Ո՛չ է առանց դրոշմի գրել Քրիստոսեան (Նոյն. անդ)։

— Ծընար անախտ զիս վերըստին,
Ստեղծեր նորոգ յաւազանին.
Օծեր իւղով քո երկնային
Յորդեգրութիւն Հօրըդ վերին (Ն. Շնորհ. յՈղ-բերգ. Գիրք Ա.)։

— Սա (Հոգին սուրբ) օծանէ զմիտս մեր՝ ըստ Յովհաննու, և առնէ քրիստոնեայս և քրիստոսընկալս. և յայսմ օծութենէ զօրանամք գիտել զամենայն (Ն. Լամբ. 'ի Ներբ. գալստ. Հոգւոյն սրբոյ)։

— Դրոշմիւն քրիստոսս եղեալք (Կիւրեղ Երուս. 'ի Խորհրդած. մեռոնի)։

— Սուրբ միւռոնիս արժանացեալք՝ քրիստոնեայ կոչիցիք, զճշմարտութիւն անուանս վերստին ծննդեամբն ստացեալք. զի մինչև էր պարգևեալ ձեզ այս շնորհ, այնմ անուան տիրապէս չէիք արժանի (Նոյն. անդ)։

## 141

Բ. Կորն. Է. 10։

— Հաւատամք... յապաշխարութիւն՝ 'ի քաւութիւն և 'ի թողութիւն մեղաց ('ի Հանգ.)։

— Զաղտեղեալսն և զախտացեալսն հոգւով և մարմնով սրբէ սոցա խոստովանութիւնն ըստ աւազանին շնորհի. որ գայցէ յապաշխարութիւն գործակցութեամբ Հոգւոյն սրբոյ, լինի նորուն բնակարան (Գ. Լուս. 'ի Յաճախ. ճառ Ե)։

## 142

Գործ. Բ. 37. 38։

## 143

Գործ. ԺԹ. 18։ Եսայ. ԽԳ. 26։ Ա. Յովհ. Ա. 9,

— Խոստովանել (պարտ է) զյանցանսն, և զղջանալ (Գ. Լուս. 'ի Յաճախ. գլ. Ղ)։

— Յետ մկրտութեան թէ դէպ լիցի մեղանչել, դարձեալ ծածկէ խոստովանութեամբն առանձինն միոյ առն յոյժ առաքինւոյ. զի ոչ ամենայն քահանայի պարտ է խոստովանել (Բարսեղ Կես. 'ի Մեկն. Մարկ. ճառ ԽԳ)։

— Առանց խոստովանութեան չէք հնար քաւութիւն գտանել. վասն այսորիկ պարտ է փութալ 'ի խոստովանութիւն, քահանային խոստովանել միանգամ, և Աստուծոյ՝ հանապազ (Խոսրով. 'ի Մեկն. Ժամ.)։

— (Խոստովանել պարտ է) յանկեան միոջ զան- խուլ 'ի լսողաց և 'ի տեսողաց՝ առաջի միոյ քահանայի. և ոչ եթէ վայրապար քահանայի, այլ յոյժ երկիւղածի և գիտնականի, որ գիտէ հմտաբար բժըշկապէս սպեղանիս կապել վիրացն և բժշկել զցաւս ոգւոյն (Ս. Շնորհ. 'ի Մեկն. Յակ. Ճառ ժ̃ա̃):

## 144

Եբր. ժգ̃. 12: Եփես. ա̃. 7:

— Դարձո (Հայր անսկիզբն) և զմեզ 'ի մեղաց՝ Որդւոյ քո չարչարանօք ('ի Շարակ.):

— Թէև բիւր չարեօք յառաջինն վիրաւորեալ իցեմք, հաւատասցուք 'ի մարդասիրութենէն Քրիստոսի քաւութիւն և թողութիւն գտանել (Խոսրով. 'ի Մեկն. Ժամ.):

— Իւրաքանչիւր ոք իւրոց յանցանացն շահի զթողութիւն Քրիստոսիւ, Հոգւով սրբով (Կիւրեղ Աղեքս. 'ի գիրս Պարապ.):

## 145

Երեմ. լա̃. 34: Եսայ. ա̃. 18: խգ̃. 25: Եզեկ. լգ̃. 11: Բ. Պետ. գ̃. 9: Ա. Յովհ. ա̃. 9:

— Ամենայն մեղաւորաց ապաշխարութեամբ լինի թողութիւն (Եփրեմ. 'ի Մեկն. Համաբարբառ. գլ. ձ̃):

— Համարձակութեամբ ասեմ, թէ չիք մեղք որ ապստամբիցին և ապստամբեցին յապաշխարութենէ (Նոյն. անդ):

— Ո՞վ ոք դիմեալ կալաւ զեղջերաց սեղանոյ այսր սրբութեան (այսինքն՝ զՄ[illegible]), և ո՛չ առժամայն պըրծեալ 'ի պատժոց՝ անարատ զատաւ (Գ. Նարեկ. ԽՂօթ. Բան. ԻԷ)։

— Ու ընդ Ճառելոյս զԹիւ մեղացս . . . արդարացայց յանուն քո Հզօր. և 'ի պատմելս ինձէն զանձին իմոյ բիծ, և դու Թողցես զամբարշտուԹիւն բազում մեղանաց խոստովանելոյս՝ Հզօ՛ր ծածկատես ամենափրկիչ (Նոյն. անդ)։

— Որպէս ոչ է տուանց Քրիստոսի Աստուծոյ՝ ոգւոց փրկութիւն . . . այսպէս և ոչ տուանց խոստովանութեան ծածկութից՝ և ստգտանաց անձին՝ քաւութիւն (Գ. Նարեկ. ԽՂօթ. Բան Ծ)։

146

Մայրիսի է ապաշխարութեան ջերմութիւն, որ ոչ 'ի մարմնոյ աշխատութիւն խնայէ, այլ նեղէ և մաշէ և տառապեցուցանէ, և խնդրէ միայն զմեղացն Թողութիւն և զախտից ոգւոցն բժշկութիւն . . . Զի է և պահօք և ծոմաջան ուքնութեամբ զմեղս քաւել. է և աղօթիւք և խնդրուածովք և զորովագին պաղատանօք զմեղս քաւել. է խորգով և մոխրով և զետնախշտի անկողնօք զմեղս քաւել. է և լալով և ողբալով և գըթով տնանկաց զմեղս քաւել, և այլն (Յովհ. Մանդակունի. Ճառ. ա̃. վասն խոստով.)։

— Որպէս ազգի ազգի են մեղացն Ճանապարհք,

*նոյնպէս և զանազան են դեղք ապաշխարութեանն, որով կարող ես բժշկել զամենայն հիւանդութիւնս մեղաց, ոչ թուովք ամաց և բազում ինչ ժամանակօք, այլ միայն ուղիղ դարձիւ և սրտիւ 'ի չարեացն հեռանալով կարող ես արդարանալ (Նոյն. Ճառ ը. վասն ապաշխ.)։*

## 147

Մ*ատթ. իզ.* 17. 21. 26. 28։ Մ*արկ. ժդ.* 12. 17. 22—25։ Ղ*ուկ. իբ.* 7. 14. 19. 20։ Ա. Կորն. *ժա.* 23—25։

## 148

Ա*րժան է և զհացն անխմոր և զգինին անապակ հանել 'ի սեղանն՝ ըստ աւանդելոյ մեզ սրբոյն Գրիգորի. զի սուրբ Լուսաւորիչն յօրինականէն բերեալ զայս՝ Առաքելաբար հրաման ետ կատարել իւրոց վիճակելոցն. և մեզ 'ի նմին պարտ է յարանալ, և չառնել նորաձևս ինչ (*Յովհան Իմաստ. *'ի* Կանոնն *ը)։*

*— Գրեալ էր 'ի գիրս վասն մեր և այս ինչ, թէ գինեաւ միայն՝ առանց ջրոյ խառնման մատուցանեն ըղպատարագն...։* Ի *Լուսաւորչէն մերմէ 'ի սրբոյն Գրիգորէ ունիմք զայս աւանդութիւն, որպէս ընկալաւ նա 'ի նախնեաց սրբոց Հարցն՝ որ յառաջ քան զնա (Ն. Շնորհ. 'ի* Թ*ղթ. առ Ալեքս)։*

## 149

Ա. Կորն. *Ժ.* 16։

— Ո՞վ որ դիմեալ կալաւ զեղջերաց սեղանոյ այսր սրբութեան (այսինքն՝ զՄԻՒՌՈՆ), և ո՛չ առժամայն պըրծեալ 'ի պատժոց՝ անարատ զատաւ (Գ. Նարեկ. յԱղօթ. Բան. իէ)։

—Եւ ընդ ճառելոյս զթիւ մեղացս... արդարացայց յանուն քո Հզօր. և 'ի պատմելս ինձէն զանձին իմոյ բիծ, և դու թողցես զամբարշտութիւն բազում մեղանաց խոստովանելոյս՝ Հզօ՛ր ծածկատես ամենափրկիչ (Նոյն. անդ)։

— Որպէս ոչ է առանց Քրիստոսի Աստուծոյ՝ ոգւոց փրկութիւն... այսպէս և ոչ առանց խոստովանութեան ծածկութից՝ և ստգտանաց անձին՝ քաւութիւն (Գ. Նարեկ. յԱղօթ. Բան ծ)։

146

Այսպիսի է ապաշխարութեան ջերմութիւն, որ ոչ 'ի մարմնոյ աշխատութիւն խնդրէ, այլ նեղէ և մաշէ և տառապեցուցանէ, և խնդրէ միայն զմեղացն թողութիւն և զախտից ոգւոցն բժշկութիւն... Զի է և պահօք և ծոմաջան տքնութեամբ զմեղս քաւել. է և աղօթիւք և խնդրուածովք և զորովագին պաղատանօք զմեղս քաւել. է խորգով և մոխրով և գետնախշտի անկողնօք զմեղս քաւել. է և լալով և ողբալով և գըթով տնանկաց զմեղս քաւել, և այլն (Յովհ. Մանդակունի: Ճառ Ի. վասն խոստով.)։

— Որպէս ազգի ազգի են մեղացն ճանապարհք,

*Նոյնպէս և զանազան են դեղք ապաշխարութեանն, որով կարող ես բժշկել զամենայն հիւանդութիւնս մեղաց, ոչ թուովք ամաց և բազում ինչ ժամանակօք, այլ միայն ուղիղ դարձիւ և սրտիւ 'ի չարեացն հեռանալով կարող ես արդարանալ (Նոյն. Ճառ ԺԱ. վասն ապաշխ.)։*

## 147

Մատթ. իզ. 17. 21. 26. 28։ Մարկ. ժդ. 12. 17. 22—25։ Ղուկ. իբ. 7. 14. 19. 20։ Ա. Կորն. ժա. 23—25։

## 148

*Արժան է և զհացն անխմոր և զգինին անապակ հանել 'ի սեղանն՝ ըստ աւանդելոյ մեզ սրբոյն Գրիգորի. զի սուրբ Լուսաւորիչն յօրինականէն բերեալ զայս՝ Առաքելաբար հրաման ետ կատարել իւրոց վիճակելոցն. և մեզ 'ի նմին պարտ է յարանալ, և չառնել նորաձևս ինչ (Յովհան Իմաստ. 'ի կանոնն Է)։*

*— Գրեալ էր 'ի գիրս վասն մեր և այս ինչ, թէ գինեաւ միայն՝ առանց ջրոյ խառնման մատուցանեն ըզպատարագն..։ Ի Լուսաւորչէն մերմէ 'ի սրբոյն Գրիգորէ ունիմք զայս աւանդութիւն, որպէս ընկալաւ նա 'ի նախնեաց սրբոց Հարցն՝ որ յառաջ քան զնա (Ն. Շնորհ. 'ի Թղթ. առ Ալեքս)։*

## 149

Ա. Կորն. Ժ. 16։

— Ընդ մատուցանէր (Ս. Գրիգորիոս) զօրհնութեան պատարագն. հաղորդէր զամենեսեան 'ի խորհուրդն սրբութեան. բաշխէր ամենեցուն զսուրբ մարմինն և զպատուական արիւնն ամենափրկչին Քրիստոսի՝ զկենդանարարն և զկեցուցիչ ամենայն մարդկան, և զարարիչն և զաշխարհագործն ամենայն աշխարհի, զԱստուածատուր շնորհն առ ամենեսեան (Ագաթ. 'ի Պատմ.)։

— Հաւատալ (պարտ է) և զփրկական խորհուրդն՝ ստուգապէս մարմին և արիւն Քրիստոսի. որով միանամք 'ի Քրիստոս, և ժառանգակից նորուն լինիմք...։

— Այս է խորհուրդն. զի ոչ ըստ տեսանելոյն, այլ ըստ իմանալոյն է հաւատալն. զի տեսանի հաց և գինի, և իմանի մարմին և արիւն Որդւոյն Աստուծոյ. և փրկական կոչի, վասն զի փրկեցաք նովաւ և փըրկիմք՝ 'ի կեալ և 'ի մեռանել (Խոսրով. 'ի Մեկն. Պատ.)։

— Աչք կրկին պարտ է ստանալ մեզ՝ մարմնոյ և հոգւոյ. զի մարմնոյ աչօք տեսանեմք հաց 'ի ձեռս քահանայից. իսկ աչօք հոգւոյ տեսանեմք զնոյն հաց՝ դարձեալ ճշմարտապէս 'ի մարմին և 'ի միտք և 'ի հոգի Բանին Աստուծոյ, որպէս և միացոյց ընդ Աստուածութիւնն իւր զ'ի Կուսէն առեալն զմարմին (Բարսեղ Ճոն. 'ի Մեկն. Մարկ. գլ. ժդ)։

— Հաւատալ և 'ի մարմին և յարիւն Որդւոյն Աստուծոյ, որ պատարագի 'ի վերայ սրբոյ սեղանոյն՝ թէ

ճշմարտապէս է Նա մարմին և արիւն Քրիստոսի (Գ. Նարեկ. 'ի Հրաշանգս Հաւատ.)։

— Նշանակաւ հացին տուեալ լինի քեզ մարմին, և Նշանակաւ գինւոյ տուեալ լինի քեզ արիւն (Յ. Ոսկեբ. 'ի խորհրդած. ճառ Ղ. համար 3)։

## 150

Ա. Յովհ. ա. 7։ Յովհ. Զ. 52—57։

—Կանգնեալ 'ի սմա (յիշատակ) սեղան սրբութեան, բաշխէ զմարմին իւր և զարիւն, և տայ 'ի սմանէ մեզ Նորոգութիւն 'ի Թողութիւն մեղաց մերոց, ('ի Շարակ.)։

— Սրբութիւն սովոր եմք կոչել զմարմին և զարիւնն Քրիստոսի, զոր միշտ ճաշակեմք, և սրբիմք Նովաւ (Ն. Լամբ. 'ի Մեկն. Սաղմ.)։

— Որ ոք ճաշակէ զայն խորհրդոյն (հաղորդութեան) զօրութիւն հաւատով և սիրով, սրբի 'ի մեղաց (Նոյն. 'ի Մեկն. Պատ.)։

— Հաղորդութիւն կոչէ, զի կցորդի Նա մեզ, և մեք Նմա (Խոսրով. 'ի Մեկն. Պատ.)։

— Ո՛չ միայն խօսել ընդ Աստուծոյ՝ ըստ Մովսիսի՝ կայ մեր առաջի, և կամ տեսանել զլեառյն Աստուծոյ, այլ և ձեռօք շօշափել զանշօշափելին, և շրթամբք համբուրել զՑէրն, և բերանով ճաշակել ըզկերակրիչն ամենայնի և 'ի սիրտս ընդունել, և հոգւով միանալ ընդ Նոյն, և լինել աստուածընկերհօք՝ ընդ Աս-

տուծոյ միաւորելովն (Ն. Շնորհ. 'ի Թղթ. Ընդհ. 'ի Բանն առ. քահ.)։

— Որք արժանապէս ճաշակեն զհացն՝ յերկնից իջեալ՝ զտուողն կենաց աշխարհի, և ըմպեն... զարիւնն անմահացուցիչ՝ կենդանութեան Աստուծոյ, որքան քաղցրութեամբ լնուն, և աստուածատեսակք եղեալ և յԱստուած միացեալ, ճանաչեն զի քաղցր է Տէր։ Եւ գիտեն զայս իսկապէս խորհրդազգածք խորհրդոյն. նոցա թողում խմանալ՝ եթէ որք առանց խղճի մնաց մերձենան 'ի սուրբ սեղանն, և ճաշակեն զմարմին անարատ զառին, և ըմպեն զմեղսաքաւիչ արիւնն, որքան ուրախութեամբ լնուն ընդ Աստուած միանալովն (Ս. Շնորհ. 'ի Մեկն. Ա. Պետ. Ճառ. Դ.)։

— Օր ըստ օրէ զայս արիւն պատարագեալ Հօր՝ քաւիմք 'ի պարտեաց մեղացն, որպէս գրեալ է. «Արիւնն Յիսուսի սրբէ զմեզ յամենայն մեղաց» (Ն. Լամբ. 'ի Մեկն. Պատ.)։

151

Առանց խոստովանութեան՝ մեղք ոչ քաւին, և առանց ապաշխարութեան՝ հաղորդութեան արժանի ոք ոչ լինի (Խոսրով. 'ի Մեկն. Ժամ.)։

— Մաքրեա զմիտս և զխորհուրդս (մեր), զի և մեք հաղորդեսցուք սրբութեամբ ('ի Շարակ.)։

— Մաքուր հոգւով և սուրբ սրտիւ, և անարատ հաւատով, և մեծաւ յուսով, և պարզ մտօք, և կա-

*տարեալ սիրով, ահիւ և դողութեամբ սպասաւորե-ցէք Աստուածային խորհրդոյն (ո՛վ քահանայք), և մի իբրև ջուր ընդ խողովակ անցանէք անմտաբար ընդ խորհրդական բանս աղօթիցն՝ զոր մատուցանէք . . . Մի՛ ոք 'ի ձէնջ անարժանութեամբ Աստուածային խորհրդոյն սպասաւորեսցէ, և կամ զոք 'ի ժողովրդե-նէն անքննաբար հաղորդեցուսցէ, զի մի՛ ընդ Յուդայի և ընդ խաչահանուացն դատապարտեսցի ։ Մի՛ ոք ծած-կեալ յոգի իւր զգործս մեղաց՝ առանց ճշմարիտ խոս-տովանութեան, և այնպէս մատիցէ 'ի Տէրունական խորհրդոյն սպասաւորութիւն, զի մի՛ զբարկութիւնն Աստուծոյ շարժեսցէ 'ի վերայ ինքեան և աշխարհին, և 'ի բաց ընկեսցի յԱստուածային հարսանեացն . . . Եւ արդ աղաչեմք, մի՛ որպէս մարմնական ինչ գործ վարկանելով զերկնային խորհրդոյն կատարումն, այլ ահիւ և դողութեամբ սպասաւորեցէք Աստուածայ-նոցն. զի թէ սերովբէն սուրբ յօրինակն՝ ունելեաւ կարօտանայր՝ մերձենալով 'ի կայծակունս որ 'ի վերայ սեղանոյն, մեզ հողեղինացս և մեղաւորացս՝ քանի՞ մաքրութիւն և զգուշութիւն պիտոյ է յաղագս առ ճշմարտութիւն այնր օրինակի մերձենալոյ ։ Վասն որոյ զմիտս և զզգայարանս պարտական էք պարսպել յա-մենայն վնասակար իրաց սպասաւորքդ սրբոյ խորհր-դոյն յամենայն ժամանակի, առաւել յայնմ աւուր՝ յորում յԱստուած մերձենալ հանդերձեալ իցէք ։ Զի թէ Մովսիսի ասացաւ յԱստուծոյ՝ ոչ կոխել մռեալ*

մորթովք զտեղին՝ ուր երևեցաւ հուր Աստուածութեանն, ո՜րքան մեզ արժան է լուծանել զմեռելութիւն մեղաց 'ի մէնջ, և ապա յԱստուածայինն մերձենալ խորհուրդ (Ն. Շնորհ. 'ի Թղթ. Ընդհ. 'ի Բանն առ քահ.)։

152

Մատթ. ժթ. 6։
Տես և 'ի համարն 154։

153

Ծննդ. ա. 28։
— Յանուն քո կենդանի Աստուած և Տէր՝ արարիչ երկնի և երկրի. որ արարեր զամենայն ինչ բանիւ՝ հրամանաւ քով ստեղծեր զմարդն զառաջին զԱդամ և հաստատեցեր 'ի նմանէ զամուսնութիւն Եւայի, և պսակեցեր թէ Ահա բարի են յոյժ ('ի Մաշտ.)։

154

Եփես. ե. 25. 28—32։
Ո՛չ խոտեցեր զամուսնութիւն, այլ սրբեցեր զնա և քահանայապետաբար օրհնեցեր և հաստատեցեր անսուտ բանիւդ, թէ Զոր Աստուած զուգեաց՝ մարդ մի՛ մեկնեսցէ ('ի Մեծ Մաշտ.)։

155

Մի՛ ոք 'ի քահանայից 'ի բռնութենէ բռնաւորաց՝ առանց կամաց առնն և կնոջն՝ պսակ դիցէ...։ Զի

Պսակն այն անհասատատ է և լուծանելի, և պսակադիրքն ոչ առանց պատժոց (Ն. Շնորհ. 'ի Թղթ. Ընդհ. 'ի Բանն առ քահ.)։

156

Ա. Կորն. Է. 10. 39։ Հռովմ. Է. 2։
Տես և 'ի համարսն 152. 154։

157

Տես 'ի համարն 147։

158

Ղուկ. իդ. 50։

159

Մկրտչին եպիսկոպոսութեան եղև յայնմանէ՝ որ երդմամբ առ զքահանայութիւնն 'ի Հօրէ՝ ըստ կարգին Մելքիսեդեկի, ոչ ըստ Աստուածութեանն՝ այլ ըստ մարդկութեանն...։ Եւ զնոյն քահանայութիւն՝ զոր ինքն 'ի Հօրէ ընկալաւ յաղագս խաչին մահու 'ի վերայ այնոցիկ՝ զորս գնեաց արեամբ իւրով, շնորհեաց աշակերտաց իւրոց 'ի ժամանակի համբառնալոյն յերկինս՝ ըստ աւետարանին Ղուկայ, թէ Եդ ձեռն 'ի վերայ նոցա և օրհնեաց զնոսա (Ն. Շնորհ. 'ի Թղթ. Ընդհ. 'ի Բանն առ Առաջնորդս եկեղեցւոյ)։

— Ահան զնոսա 'ի գլուխ լերինն... և ամբարձեալ զձեռս իւր Աստուածեղէնս՝ օրհնեաց զնոսա, տալով նոցա զամենայն շնորհս Աստուածայինս և զամենայն

աստիճանաց բարձրութիւնս. զի այնպէս ունիցին և նոքա տալ որոց յետ նոցա փոխանորդութեամբ ընդուն զնոյն պաշտօն (Իգնատ. 'ի Մեկն. Ղուկ.)։

— Ամենակալ ձեռին օրհնեցեալք 'ի գովեցեալ աւուրն Համբարձման... Մասնակից կրօնից Օծութեամբ Փրկչին ձեռնադրեալք (Գ. Նարեկ. 'ի Ճառն Առաք.)։

— Ամբարձեալ զձեռս իւր՝ օրհնեաց զնոսա, երկնաստեղծ ձեռօքն ձեռնադրելով զԱռաքեալսն, և յայնմ աւուր արար զնոսա կաթողիկոսս ('ի Մեկն. Ղուկ.)։

## 160

Գործ. ա. 21—26։ ժդ. 2—6։ ի. 28։ Եփես. դ. 11. 12։ Ա. Տիմոթ. դ. 14—16։ ե. 17։

— Ծաներուք և զայս (ով քահանայք). զի կոչումն անուան քահանայութեանդ ձերոյ՝ ոչ է 'ի մարդկանէ, և ոչ 'ի ձեռն մարդոյ, այլ յայնմանէ՝ որ կոչեցաւն քահանայ ըստ կարգին Մելքիսեդեկի, որ և ինքն է քահանայ և քահանայապետ, և պատարագ Աստուծոյ Հօր. և նա ետ ձեզ զկոչումն անուան իւրոյ, և յանձն արար ընդ անուանն և զգործն իւր՝ հովուել զժողովուրդ 'իւր, և ուսուցանել միշտ զգործս բարիս, և տալ զանձն օրինակ բարեաց ամենեցուն...։ Վասն որոյ աղաչեմք, զի ըստ անուանդ կոչման՝ և զգործն կատարեցէք։ Եւ որպէս հարք և ծնողք ժո-

*ղովրդեան ձերոյ՝ յամենայն ժամ տո՛ւք նոցա զհոգևոր խրատս, միշտ ուսուցանելով յեկեղեցւոջ, 'ի հրապարակս, և առտնին զամենայն ոք՝ ըստ իւրաքանչիւր հասակի, զգուշացուցանելով և յորդորելով յԱստուածայինսն (Ն. Շնորհ. յԸնդհ. 'ի Բանն առ դասս քահ.)։*

*Տես և 'ի համարն* 120։

## 161

*Կանոն և սկիզբն կարգի եօթն Աստիճանաւորաց եկեղեցւոյ՝ Դպրաց, և Սարկաւագաց, և Քահանայից, որք ձեռնադրին յԵպիսկոպոսաց. և նախ՝ աստիճանաց Գղերիկոսացն՝ որք են Սաղմոսերգուք և Աւելածուք. ապա և այլոցն ըստ իւրաքանչիւր կարգի ('ի Մեծ Մաշտ.)։*

## 162

*Ի բազումս և 'ի զանազանս անուանին * անուանս և իրս մի գործ ցեսչութեանս ոգւոց, որ կոչի Կաթուղիկոսութիւն և Հայրապետութիւն, Եպիսկոպոսութիւն, և Քահանայութիւն. և մի քան զմի առաւելեալ և նուազեալ (պատուովք և իշխանութեամբք)։ Քանզի որ մեծն է 'ի սոսա՝ ծանրագունի բեռանց է 'ի ներքոյ, որպէս պարունակօղ զամենայնն (Ն. Շնորհ. 'ի Թղթ. Ընդհ. առ համօրէն Հայս)։*

---

* Ըստ այլ օրինակաց՝ քահանայքն։

— Ի դասակարգութիւն երկնաւոր քահանայապետութեանցն ուղղեաց (եկեղեցի) զկանոն և զաստիճան պաշտօնէից իւրոց. քանզի Նոքա՝ որպէս պյնորիկ խորհրդազգացքն պատմեցին մեզ, ոմանք անընդմիջաբար են շուրջ զԱստուծով, այսինքն՝ Աթոռքն անուանեալ և Քերովբէից և Սերովբէից դասակարգութիւնքն, որոց համատիպք են Արքեպիսկոպոսք՝ Եպիսկոպոսք և և Քահանայք. և այլք յետ Նոցա՝ Տէրութիւնք, Զօրութիւնք, Իշխանութիւնք, զորս գաղափարեն Սարկաւագք և Կէս սարկաւագք և Սաղմոսերգուք. և երրորդ դաս 'ի Նոսա՝ Պետութիւնք, Հրեշտակապետք, Հրեշտակք, որոց ապացոյց են կրօնաւորք, Ժողովուրդք և Երեխայք. որպէս զի լիցի և աստ ինն դասակարգութիւն պաշտօնէից Աստուծոյ՝ զանազան պատուովք և իշխանութեամբք (Ն. Լամբ. 'ի Խորհրդած. կարգ. եկեղ.):

Տես և 'ի համարն 121:

## 163

Յորժամ հանդերձեալ էին Առաքեալքն Քրիստոսի ելանել յաշխարհէ, ընտրէին 'ի հաւատացելոց անտի արս երկիւղածս և իմաստունս, և կացուցանէին փոխանակ իւրեանց՝ գլուխ ժողովրդեանն 'ի քաղաքս և 'ի գաւառս, զորս և Եպիսկոպոս անուանեցին, որ թարգմանի Տեսուչ..: Պարտ է գիտել և զայն՝ թէ յաղագս որոյ պատճառի եղաւ 'ի Քրիստոսէ և յԱռաքելոց Նո-

րա այս գործ Եպիսկոպոսութեան. յայտ է թէ վասն լինելոյ Գլուխ և Հրամանատար քահանայից և ժողովրդոց, և որպէս զԴէտ աննիրհ աչօք մնասցէ նայել ՚ի վերայ ամենեցուն, զթիւրեալսն ուղղել, և զուղիղսն հաստատուն պահել յուղղութեանն (Ն. Շնորհ. ՚ի Թղթ. Ընդհ. ՚ի Բանն որ առ Առաջն.)։

## 164

Ունին (կաթողիկոսք) առաւելութիւն պատուոյ քան զԱյլս Եպիսկոպոսս։ Զի ոչ եթէ յիւր վիճակն միայն, այլ և ընդ ամենայն տեղիս՝ ուր ազգն իւր և համացեղքըն են, ունի (կաթողիկոսն) իշխանութիւն ձեռնադրել նոցա Եպիսկոպոս, և տալ զմեռոնն. վասն այնորիկ անուանի Կաթողիկոս * (Ն. Լամբ. ՚ի Խորհրդած. կարգաց եկեղ.)։

## 165

Գործ. զ. 5. 6։ ժգ. 2. 3։ ժդ. 22։ Բ. Կորն. ը. 19։ Ա. Տիմոթ. դ. 14։ Բ. Տիմոթ. ա. 6։ Եբր. զ. 2։

— Յղեալ ժողով բազում եպիսկոպոսաց ՚ի քաղաքն Կեսարացւոց՝ զի ձեռնադրեսցեն զսուրբն Գրիգորիոս, և աւանդել ՚ի նա զպատիւ խոնարհութեան քահանայութեանն Քրիստոսի, և զբարձրութիւն եպիսկոպոսութեան փառաւորութեան Աստուծոյ՝ զպատիւ մեծ, սրբով աւետարանաւն եդին ՚ի վերայ զձեռս

* Որ թարգմանի՝ Ընդհանրական։

ժողովք եպիսկոպոսացն սրբոց, և գլխաւորն Ղևոն-
դիոս. զի առցէ նա իշխանութիւն յերկինս և յերկ-
րի, առնուլ զփականս արքայութեանն երկնից (Ագաթ. 'ի Պատմ.):

## 166

Ել. իը. 41: Ղևտ. ը. 12:

— Քահանայք պատուեալք օծմամբ սուրբ Հոգ-
ւոյն ('ի Շարակ.):

— Քահանայս օծեմք, և կնգուղ տամք (Ն. Լամբ. 'ի խորհրդած. կարգ. եկեղ.):

— Եպիսկոպոսն առաջի սրբոյ սեղանոյն՝ ինձ զա-
բեղայութեան ետ ձև յետ օծելոյն քահանայ (Նոյն. անդ):

— Խորհուրդ կենաց 'ի կիր արկեալ,
ՅԱստուածայնոցըն հրամայեալ.
Զի հօտապետ հօտիցն օծեալ (զՍ. Գրիգորիոս),
Զայն որ հօտին փրկանք եղեալ (Ն. Շնորհ. 'ի Վիպաս.):

— Ապա գումարեցին զիշխանսն մեծամեծս, զի առ-
ցեն զցանկալին Ներսէս, և զնստուցեն ('ի կեսարիա)՝
ուր սովոր էին զՀայրապետսն օծանել (Փաւստոս. 'ի Պատմ. դպ. Դ. գլ. դ):

## 167

Բ. Տիմոթ. ա. 2: Ա. Տիմոթ. գ. 2. 7. 9: Տիտ. ա. 7. 9:

— Չէ բաւական (քահանայի կամ եպիսկոպոսի) միայն սրբութիւն անձին, այլ պարտի զկատարեալն ունել զգիտութիւն Աստուածայնոցն. զի 'ի խնդրելն 'ի նմանէ զճանապարհս ընթացից օրինացն Աստուծոյ ժողովրդեանն՝ կարող լիցի ցուցանել զուղիղն (Ն. Լամբ. 'ի Մեկն. Պատ.)։

## 168

Ովս. դ. 6։ Ա. Տիմ. գ. 3. 6. 8։ Ե. 22։ Տիտ. ա. 7։ Ղևտ. իա. 17—23։

— Յայսմ ախտէ ([illegible]) է զանարժանս յառաջ կոչել յԱստուածայնոցն սպասաւորութիւն 'ի կորուստ կոչողացն և կոչեցելոցն, և զարժանաւորս յետս կացուցանել, զպիղծս իբրև զսուրբս, և զսուրբս իբրև զպիղծս վարկանելով։ Եւ բիւրք են առ 'ի նմանէ խառնափնդորեալ կարգք յեկեղեցւոջ, որք խոտելիք են Աստուծոյ (Ն. Շնորհ. 'ի Թղթ. Ընդհ. 'ի Բանն առ Առաջնորդս)։

## 169

Յակոբ. Ե. 14. 15։

## 170

Գործ. իը. 8։

## 171

Մարկ. զ. 13։ Տես և 'ի համարն 169։

## 172

Օ յիւղն աղօթքն զօրաւոր առնէ և դեղ բշկութեան

կատարէ. վասն որոյ թէ երկոքին լինիցին՝ բարի է. և եթէ վասն ծուլութեան կամ այլ պատճառի իրիք օծութիւն իւղոյն խափանի, աղօթիցն լինել պարտ է առանց ամենայն պատճառի (Խոսրով. 'ի Մեկն. Ժամ.):

— Առաքեալքն զբժշկութիւնսն՝ զոր կատարէին, անուամբ Տեառն առնէին..: Ապա յայտ է յայսմանէ, որպէս ես վարկանիմ, եթէ ոչ իւղն ինչ տայր զառողջութիւն հիւանդին, այլ՝ անունն Տեառն... Նմին իրի ասէ. Եւ աղօթքն հաւատովք փրկեսցեն զաշխատեալն, և յարուսցէ զնա Տէր (Ս. Շնորհ. 'ի Մեկն. Յակ. Ճառ Ժա̃):

## 173.

Սուրբ զՀոգին կենդանարար՝ որ բաշխէ առատապէս զբազմապատիկ պարգևս յեկեղեցիս արդարոց, գովեսցէք ('ի Շարակ.):

— Աղբիւր անսպառ (սուրբ Հոգի), յորմէ բաշխի տիեզերականն շնորհք (անդ):

— Աստուածայինքն ամենայն՝ պարգևք են և տուրք և ընծայք, զոր շնորհէ տիրաբար ծառայից իւրոց. զի ըստ գործոց ոչ ունիմք համարձակութիւն խնդրել ինչ, այլ միայն 'ի հաւատն ապաւինիմք (Խոսրով. 'ի Մեկն. Ժամ.):

— Տուրք Աստուծոյ՝ շնորհք և ողորմութիւն են, այսինքն՝ ձրի ողորմելով (Նոյն. անդ):

— Շնորհք կոչեմ զառանց փոխարինի տուրքն,

որպէս այս՝ զոր տայ Աստուած՝ մարդկան (Ն. Լամբ. 'ի Մեկն. Առակ. գլ. իե)։

## 174

Հռովմ. ե. 16։ զ. 23։ Տիտ. գ. 7։

— Կամեցող բարեաց, Տէր կամարար, մի՛ թողուր զիս 'ի կամս անձին իմոյ գնալ, այլ առաջնորդեա՛ ինձ լինել միշտ ըստ կամաց քոց բարեսիրաց (Ն. Շնորհ. յԱղօթ.)։

— Զօրացո՛ զմեզ Տէր 'ի պահպանութիւն պատուիրանաց քոց ('ի Ժամագիրս)։

— Շնորհեա՛ մեզ երկիւղիւ 'ի պաշտօն քո կանխել հանապազ, սիրել զքեզ 'ի բոլոր սրտէ (անդ)։

## 175

Բաշխի շնորհ Հոգւոյն սրբոյ քահանայիւք, մկրտութեամբ և ձեռնադրութեամբ, և մարմնոյ և արեան Տեառն բաշխելով, և այլ քահանայագործութեամբ առ հաւատացեալս (Ն. Շնորհ. 'ի Մեկն. Բարձր.)։

— Տես և 'ի համարն 118. 134. 138. 141. 144. 146. 150. 154. 169։

## 176

Ա. Կորն. ժբ. 4—11։ Եփես. դ. 4. 12։

— Շնչէ (Հոգին սուրբ) ո՛ւր կամի, ո՛րքան ախորժէ, յո՛րժամ և ո՛րքան... ո՛րպէս և կամի՝ բաժանէ զշնորհս ('ի Շարակ.)։

## 177

Յովհ. Ե. 21. 25. 27—29։ Մարկ. ԺԶ. 25։ Ղուկ. Ի. 35։ Գործ. ԻԴ. 15։ ԻԶ. 8։ Ա. Թեսաղ. Դ. 15։ Եսայ. ԻԶ. 19։

— Անխախտելի դեղ կենաց, որ և մեռելոց՝ բնաւին եղծելոց առնես սքանչելիս։ Ամենատարած աններկ-բայելի, որ զհուրբ կիզեալն, և զհողմով հոսեալն, և զժանեօք գազանաց ծախեալն, 'ի քթթել ական նո-վին հիւթականութեամբ անպակաս յարուցանես (Գ. Նարեկ. յԱղօթ. Բան Հ)։

— Ի յարութեանն յական թօթափել տարերք մարմնոյն ժողովլին հրամանաւն Աստուծոյ առնուլ ըզ-բանական հոգին՝ ոչ զայլոց, այլ զիւրն (Ն. Շնորհ. 'ի Մեկն. Բարձր.)։

Տես և յԸնդարձ. Հրահանգն յէջ 340։

## 178

Մատթ. ԺԳ. 43։ Ղուկ. Ի. 36։ Փիլիպ. Գ. 21։ Կողոս. Գ. 4։ Ա. Կորն. ԺԵ. 42։ Յայտն. ԻԱ. 4։ Իմաստ. Գ. 7։

— Նմանեօք Տեառն՝ մեռեալք յառնեն, և սուրբք ամենայն անճառ փառօք զարդարին ('ի Շարակ.)։

— Ի ձայն փողոյ Նորոգին հոգիք ննջեցելոցն, և յառնեն 'ի մեռելոց անապական մարմնով (անդ)։

— Ի նոյն բնութիւն դարձեալ խառնին
Ըստ արուեստաւոր քոյոյ բանին.

Ո՛չ ՚ի յայժմուս լուծանելին,

Եւս ՚ի յանեղծն որ ՚ի Դրախտին (Ն. Շնորհ. յՈղբերգ. գիրք Գ)։

## 179

Մատթ. ժզ. 27։ իե. 31—33։ իզ. 64։ Յովհ. ե. 22։ Գործ. ժէ. 31։ Հռովմ. բ. 16։ ժդ. 10։

— Գալոց է նովին մարմնովն և փառօք Հօր դատել զկենդանիս և զմեռեալս (՚ի Հանգ.)։

— Ոչ եթէ Հայր (ասէ) դատի զոք, այլ զդատաստանս զամենայն ետ յՈրդի իւր. և ոչ եթէ ինքն զինքըն ինչ օտար առնէ (Հայր) ՚ի դատաստանէն, այլ յակնարկել անդ իւրում՝ ՚ի ձեռն Որդւոյ դատի։ Արդ յակնարկել Հօր Որդի դատի։ Դարձեալ՝ ոչ այլ է ակնարկել Հօր, և այլ ակնարկել Որդւոյ, այլ մի և նոյն է (Կիւրեղ Երուս. ՚ի Կոչ. Ընծ. գլ. ժե)։

— Համբարձեալ գեր ՚ի վերոյ ամենայն երկնի, նստաւ ճոխութեամբ յաթոռն իւրական սկզբնաժառանգ Հօրն հաւասարութեան... անկորուստ առեցելովն. և աննուազ սեպհականօքն. որով և եկեսցէ ՚ի դատաստան հատուցման, քննել զծածկեալսն կըշռութեամբ չափոյ արդար իրաւանց (Գ. Նարեկ. յԱղօթ. Բան լդ)։

— Յորժամ փառօք Հօր եկեսցէ
Նովին մարմնովն որ ՚ի կուսէ (Ն. Շն. ՚ի Բանն հաւ.)։

### 180

Գործ, ժ. 42։ Բ. Տիմոթ. դ. 1։ Ա. Պետ. դ. 5։ Յայտն. ժա. 18։

— Քրիստոս է Որդի Աստուծոյ... դատիչ կենդանեաց և մեռելոց (Գ. Լուս. յԱգաթ.)։

### 181

Մատթ. ժզ. 27։ Յովհ. ե. 30։ Բ. Կորն. ե. 10։ Հռովմ. բ. 6։ Յայտն. ի. 13։ իբ. 12։

— Քննութիւն մարդկան յարուցանէ,
Եւ ըստ գործոց հատուցանէ։
Չարացն ըզչար վըճիռ տացէ.
Յաւիտենից հրովըն տանջէ.
Իսկ որ բարիքն են՝ պըսակէ,
Ընծառ փառօք փառաւորէ (Ն. Շնորհ. 'ի Բան հաւատ.)։

### 182

Մատթ. իե. 34. 41. 46։ Բ. Տիմոթ. դ. 8։ Ա. Կորն. թ. 25։ Յակ. ա. 12։ Ա. Պետ. ե. 4։ Յայտն. բ. 10։ Բ. Պետ. բ. 9։ դ. 7։ Յուդ. 15։ Բ. Թեսաղ. ա. 5—7։

— Երթիցեն արդարքն 'ի կեանսն յաւիտենից, և մեղաւորքն 'ի տանջանսն յաւիտենից։ Երկաքանչիւրոցն Աստուածային բանն յայտ առնէ. Եկայք, ասէ, օրհնեալք Հօր իմոյ. ժառանգեցէք զարքայութիւնն Աստուծոյ. և Երթայք յինէն, անիծեալք, 'ի հուրն

յաւիտենից, զոր պատրաստեալ է սատանայի և հրեշ-
տակաց նորա (Գ. Լուս. ՚ի Յաճախ. ճառ. ի):

## 183

Յովհ. ժէ. 24: Ա. Յովհ. գ. 2:

— Չիք ինչ բարձրագոյն փառս և մեծագոյն երա-
նութիւն կամել ումեք, քան թէ զնա խուռական փա-
ռօքն լի բովանդակ տեսանել. քանզի այն է արքայու-
թիւն, այն է վերին քաղաքին և առագաստին հան-
գիստ. այն իսկ է անճառ բարիքն և անպատում խըն-
դութիւնն և երանութիւնն (Ս. Շնորհ. ՚ի Մեկն. Ա.
Յովհ. ճառ. ե):

## 184

Յովհ. ժդ. 3: Ա. Թեսաղ. դ. 16: Եբր. ժբ. 22:
Մատթ. ը. 11:

— Ամենափրկիչն տայր աւետիս աշակերտացն, թէ
Ուր ես իցեմ՝ և դուք անդ իցէք, և յամենայն ժամ
զիմ զփառսն տեսանիցէք (Գ. Լուս. յԱգաթ.):

## 185

Մատթ. է. 23: ը. 12: Մարկ. թ. 47: Ղուկ.
ժգ. 27: Հռովմ. բ. 9: Եսայ. կզ. 24: Եբր. ժ. 27:
Յայտն. ի. 12—15:

— Այն է ահագին և անտանելի տանջանք՝ քան
զտանջանս գեհենին և քան զայլ ամենայն դառնա-
գոյն տեսակս տանջանաց, յերանելոյն տեսութենէն

Քրիստոսի զրկել և յերեսացն նորա անկանել (Մ. Շնորհ. 'ի Մեկն. Ա. Յովհ. ճառ Է):

## 186

Հռովմ. Ը. 23—25: Յովհ. Ե. 24: Ժ. 27. 28: Մատթ. ԺԹ. 29: ԻԵ. 46: Ա. Յովհ. Բ. 25:

— Յանձնառու երանութեան վայելեցուցանէ զատուածայնացեալսն Հոգւով (Գ. Լուս. 'ի Յաճախ. ճառ Ժ):

— Յորժամ (պարգեւքն՝ ի նորոգեալ աշխարհի) երանութիւնքն լինին, աղքատաց մեծանալ, և սգաւորաց մխիթարել, և հեզոց զերկրին երկիրն ժառանգել, և հալածելոց և որ սաստիկ նախատանաց վասն անուանն նորա (Քրիստոսի)՝ մեծաց հատանել վարձուց, յորժամ զուարճանալով գնան 'ի տունն իւրեանց յաւիտենական (Եղնաւ. 'ի Մեկն. Ղուկ. գլ. իա):

## 187

Եբր. Ա. 1. 2:

— Հոգիքն որ ելանեն 'ի մարմնոյ աստի, երթան 'ի կեանսն ըստ իւրաքանչիւր արժանաւորութեան. և անդ հրճուին առաքինեացն հոգիքն ըստ խոստացեալ աւետեաց երանութեանցն, որ կայ պահի յաւիտենից սրբոցն անձանց՝ որ 'ի կամս Աստուծոյ վարեցան յաշխարհի ըստ աւետարանին քարոզութեան: Երանին 'ի Տեառնէ աղքատք հոգւով. որ վասն աւետեաց մեծութեանն Հոգւով աղքատացան՝ վասն արքայութեանն երկնից՝ որ 'ի Տէր Յիսուս Քրիստոս: Երանին

նայն. և զշնորհս ամենայն բարեպաշտութեան ուսոյց Գրովք որովք. զի կարասցեն (մարդիկ) խօսս տալ 'ի չարէն և առնել զբարին (Գ. Լուս. 'ի Յաճախ. ճառ ը)։

191

Հռովմ. ը. 14. 15։

— Որ կայենեան տառապանութիւն եղև ամբաստան թագուցեալ ամբարշտութեանն. իսկ այլում մարդկան խեղճ մտաց տուաւ փոխանակ տառապանաց։ Մեծ մարգարէ է խեղճ մտացն, յանդիմանիչ և թագչի։ Բնական է օրէնս այս. զի և վկայ է ընդդէմ անիրաւութեանն. և զարդարն յորժամ որ ածէ 'ի վերայ զվճիռն՝ հաստատէ և անվրէպ ցուցանէ (Եփրեմ. 'ի ճառն՝ որ 'ի վերայ Ենովքայ և Եղիայի)։

— Յարափակեցեր (Տէր) բնաւորական գիտութե զխեղճ մտաց ('ի մարդում)՝ զի մի աշխատիցիս զգայա յանցուածս դատելով. զի թէպէտև թագուցանել ոք կամիցի, խեղճ մտացն ակամայ խոստովանել տայցէ։ Դատաւորն լռէ, և խեղճ մտացն խոստովանի... մեղք թագչին, և խեղճ մտացն յայտնէ զնա (Նոյն. անդ)։

192

Եսայ. ծա. 7։

— Բան ընթերցիք զիմաստութիւնն տանէ, զորոյ զսերմն ընկալեալ Աստուածեղ արդարութեամբ. և բուսեալ նա շուաւէր 'ի բնութեանս գեղեցիկ և վայելուչ (Ս. Շնորհ. 'ի Մեկն. Յակ. ճառ է)։

— Նմանական ընտրողութեան ամենայն որք բառական ստեղծու Աստուծոյ (Ն. Լամբ. 'ի Մեկն. Առակ. Գլ. Ժ)։

— Մերկումն է գիտութիւնն և ճանաչութիւնն (բարւոյ և չարի), որ ազդէ իւրաքանչիւր ումեք 'ի մէնջ. զի ամենայն մարդիկ ունին զայս՝ յայտնի է (Եփրեմ. 'ի ճառն որ 'ի վերայ Ենովքայ և Եղիայի)։

— Ընդ մարդկան սերմանարկեաց և անկեաց (Աստուած) զպայծառ զարգամունս (խղճի մտաց) (Նոյն. անդ)։

— Նոյ այս (Ծնընդոց Բնական Օրինաց կամ Օրէնք Բարոյականք) սերմանեալ են 'ի սիրտս մարդկան 'ի սկզբանէ յաւիտենից, և սոքօք առաւելեան Հարքն առաջարք (Նոյն. 'ի Մեկն. Եղ. Գլ. Ե)։

## 193

Յակ. Ա. 21։ Ա. Թեսաղ. Ե. 21. 22։
Տես և 'ի Համարն 192։

## 194

Չէք ազգ՝ որոյ ոչ իցեն իրաւունք 'ի դատաւորաց. Եւ այս ամենայն կարգք իշխանութեան աշխարհի կարգեալ են 'ի Տեառնէ ըստ նախախնամութեանն որ առ ազգս մարդկան (Գ. Լուս. 'ի Յաճախ. Ճառ Ը)։

— Երկրաւոր իմաստութիւնս ոչ սակաւ նպաստ եղև բնութեանս 'ի բարեկարգութեան սակս. զի և քաղաքական օրէնք և դատաստանաց իրք, և չափք և կշիռք և առևտուրի վաճառաց փոփոխմունք, և ու-

— Բնական ընտրողութեան ամենայն որ բառական ստեղծաւ յԱստուծոյ (Ն. Լամբ. 'ի Մեկն. Առակ. Գլ. Ժ):

— Մերկութիւն է գիտութիւնն և ճանաչութիւնն (բարւոյ և չարի), որ ազդէ իւրաքանչիւր ումեք 'ի մէնջ. զի ամենայն մարդիկ ունին զայս՝ յայտնի է (Եփրեմ. 'ի ճառն որ 'ի վերայ Ենովքայ և Եղիայի):

— Ընդ մարդկան սերմանարկեաց և տնկեաց (Աստուած) զայսչափ զազգականութիւնս (խղճի մտաց) (Նոյն. անդ):

— Այլ այս (Սկզբունք Բնական Օրինաց կամ Օրէնք Բարոյականք) սերմանեալ են 'ի միտս մարդկան 'ի սկզբանէ յաւիտենից, և սոքօք առաւելան Հարքն ար-դարք (Նոյն. 'ի Մեկն. Եղ. Գլ. Ե):

193

Յակ. ա. 21: Ա. Թեսաղ. Ե. 21. 22:
Տես և 'ի Համարն 192:

194

Չիք ազգ՝ որոց ոչ լիցին խրատունք 'ի դաստիարակաց: Եւ այս ամենայն կարգք իշխանութեան աշխարհի կարգեալ են 'ի Տեառնէ ըստ նախախնամութեանն որ առ ազգս մարդկան (Գ. Լուս. 'ի Յաճախ. Ճառ Է):

— Երկրաւոր իմաստութիւնս ոչ սակաւ նպաստ եղև բնութեանս 'ի բարեկարգութեան սորա. զի և քաղաքական օրէնք և դատաստանաց իրք, և չափք և կշիռք և տուրևառիկ վաճառաց փոփոխմունք, և ու-

անկեալ եղեալք···։ Թողում աստ որ յայտնանէ ազգի մարդկան ախտք զանազանք ըստ հոգւոյ և ըստ մարմնոյ, և օտարութիւն յԱստուծոյ, և պատուհասք բազմօրինակք. և որք յայտնանէ թշնամութիւնք և ախտալից կեանք և մահ դժնդակք. և որ ՚ի հանդերձեալսն համբարեալ կան անհնարին և անհանդուրժելի և անապառ տանջանք (Խոսրով. ՚ի Մեկն. Ժամ.)։

Տես և յԸնդարձ. Հրահանգն. յէջ 385)։

## 211

Հռովմ. Ե. 14. 18։

— Որդին Աստուծոյ էառ զկերպարանս Ադամայ ՚ի նմանութիւն ծառայի··· զի ծառայական մարմնովն զամենայն արդարութիւնսն կատարեսցէ···։ Զի որպէս ընդ միոյ Ադամական մարմնոյն պարտաւորեցան (մարդիկ), ընդ միոյ Տէրունական մարմնոյն ազատեսցին ՚ի ծառայութենէ մեղացն (Գ. Լուս. յաղաթ.)։

— Հայրենատուր աւանդութիւնս՝ թուի ինձ, եթէ զառաջին մարդոյն անհնազանդութիւնն ասէ և զպատուիրանազանցութիւնն. որով մեղք յաշխարհս մտին, և ՚ի մեղաց անտի մահ։ Եւ այնպէս յամենայն մարդիկ տարածեցաւ մահ, և եղև նոցա իբրև ՚ի հօրէ աւանդեալ ժառանգութիւն (Ս. Շնորհ. ՚ի Մեկն. Ա. Պետ. Ճառ Գ̃)։

## 212

Հռովմ. Ե. 12։

— Մ՛եղքն ապականեալ (Ադամ)՝ զապականութեան սերմն ազգէ յազգ ծննդոց իւրոց սերմանեաց (Խոսրով. ՚ի Մեկն. Ժամ.)։

Տե՛ս և ՚ի համարսն 211. 213.

## 213

Նախ յաւազանէն է թողութիւն հաւատացելոց յամենասուրբ Երրորդութիւնն ճշմարիտ խոստովանութեամբ (Գ. Լուս. ՚ի Յաճախ. ճառ ժթ)։

— Այսօր տրտմական և գիշերային լուծան երկունք ծննդեան Նախամօրն. քանզի զծնեալսն մարմնով ՚ի մահ և յապականութիւն՝ վերստին ծնանի Հոգին յորդիս լուսոյ Հօրն երկնաւորի (՚ի Շարակ.)։

— Զ՛որ օրինակ երևելի ջուրն (մկրտութեան) զերևելի մարմինս լուանայ և յարդարէ, նմանապէս և անտեսանելի Հոգին զներքին զտիրական մարդն, այսինքն՝ զհոգին և զմիտսն հրաշագործէ՝ սրբէ և յարդարէ և մաքրէ յաղտոյ մեղացն (Ս. Շնորհ. ՚ի Մեկն. Ա. Պետ. ճառ ը)։

— Զ՛որ օրինակ ՚ի չարչարանսն Քրիստոսի՝ նախ մահ և թաղումն, և ապա յարութիւնն. նոյնգունակ և ՚ի մկրտութեանն՝ նախ մահ և թաղումն, և ապա յարութիւնն. մահ՝ մեղացն, և թաղումն՝ հնոյն Ադամայ, իսկ յարութիւնն՝ տիրական մարդոյն և Աստուածաստեղծ պատկերին (Նոյն. անդ)։

Տե՛ս և ՚ի համարն 134։

## 214

Ա. Յովհ. Ե. 16։ Թու. Ժը. 22։ Ղուկ. Ժբ. 48։
— Որ ակամայ կամ 'ի հարկէ կամ 'ի բռնադատութենէ կամ 'ի յափշտակութենէ մոլաց մեղս գործիցէ, և ապա իսկոյն զղջանայ և կամ ապաշաւէ, այնպիսին թէպէտև մեղանչէ, այլ ոչ առ 'ի մահվան զի գոյ 'ի նմա շունչ կենդանութեան։ Իսկ որ զնոյն մեղս ինքնիշխան յօժարութեամբ և կամակար մտօք և խորհրդեամբ գործեն, և ապա անկեալ 'ի խորս չարեացն՝ արհամարհեն, իբրու թէ ոչինչ չարիս գործելով, յԱստուածոյ ոչ երկնչին՝ և 'ի մարդկանէ ոչ ամաչեն, այնպիսեաց մեղքն առ 'ի մահ են (Ս. Շնորհ. 'ի Մեկն. Ա. Յովհ. Ճառ Թ)։

## 215

Ժող. Է. 21։ Առակ. Ի. 9։ Ա. Յովհ. Ա. 8. 10։
— Մխոք անհնարինք և հեշտացուցիչք զմեզ վայրաքարշ առնեն. և պատրօղն գող, և մարմինս՝ օգնական, և զգայութիւնս՝ խեթկիչ, և հեշտութիւնն ձգիչ, և կարիքն 'ի ձեռին, և անմտութիւնն՝ մերձ, և ծուլութիւնն՝ խաւարեցուցիչ։ Յորոց յայսցանէ ափրապէս զերծանել ումեք անհնար է։ Զի որ զամ մի մարմին զգեցեալ է, և զգարշապարս իւր յերկիր հաստատեալ, յայսցանէ սուրբ և անարատ զերծանել ոչ կարէ (Ս. Շնորհ. 'ի Մեկն. Ա. Պետ. Ճառ Գ. 'ի յորդ.)։